# ԴԵՊԻ ԳԱԳԱԹ

Վ. ՏԱԼՅԱՆ

Նկ. ԱՐ. ՋԱՔԱՐՅԱՆԻ

Բարձրանում ենք
Դեպի լեռը Թեղենիս,
Ու մեզ ճամփան
Տանում է միշտ վեր ու վեր.
Այստեղ՝ ձորակ,
Այնտեղ՝ հովիտ գեղանիստ,
Մեր դեմ քարափ,
Խենթ գետակներ փրփրաներ:

Անտառներում
Թռչունների երգ ու պար,
Ծաղկունքով վառ



Ոտքերիս տակ՝
Անտառների ծովն անծայր...
Հե՜յ, առջևում
Ինչ-որ շատ ենք շտապում.
Ետ մի՛ մնա,
Փոքրիկ ճամփորդ մանրաքայլ:

Առա՛ջ, առա՛ջ,
Դեպի գագաթ վեհապանծ...
Փարվում է մեզ
Կապույտ երկինքն արևով.
Շողշողում է
Ձյունն այս քարի տակ կպած,

Բացատն իր գիրկն է գցել.
Թեկուզ դժվար
Լինի վերելք, ճանապարհ,
Չենք նահանջի.
Մենք սովոր ենք միշտ հաղթել:

Մեր վերևում
Ալ դրոշն է ծափծափում,

Արծիվներն են
Մեզ ողջունում զիլ կանչով:

Քայլենք հաստատ,
Քայլենք երգով հաղթական.
Դեպի գագաթ,
Դեպի գագաթ դյութական:




Կոմունիստական պարտիայի գործի պայքարին եղի՛ր պատրաստ

№ 8

ՕԳՈՍՏՈՍ

1955 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 27-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

ՀԱՆԳՍՏԻ ԺԱՄԻՆ

Ֆոտո՝ Ս. Խոսրոևի

# ԵՐԵԽԱՆԵՐԻ ԵՐՋԱՆԿՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

Աշխարհի բոլոր երկրներում մարդիկ ամեն ինչ անում են, որպեսզի պաշտպանեն երեխաների խաղաղությունն ու երջանկությունը: Չէ՞ որ նրանք են ավագ սերնդի գործի շարունակողները, նրանք են մեր ապագան: Իսկ դրա համար անհրաժեշտ է երկարատև խաղաղություն: Ահա այս նպատակին էր ուղղված Խաղաղության Համաշխարհային Ասամբլեան, որը գումարվեց Ֆինլանդիայի մայրաքաղաք Հելսինկիում, այս տարվա հունիսին:

Այն դահլիճում, որտեղ տեղի էին ունենում Ասամբլեայի նիստերը, հավաքվել էին մոտ ութսուն երկրի տարբեր ազգությունների, տարբեր քաղաքական հայացքների ու դավանանքների տեր մարդիկ: Բոլոր պատվիրակների խոսքն ուղղված էր ընդդեմ նոր պատերազմի: Բոլոր ելույթներում հնչում էր միևնույն վեհ, սրբազան բառը՝ «խաղաղություն»:

Խաղաղության հետ մարդիկ մեծ հույսեր են կապում, նրա մեջ դնում լուսավոր երազանքներ: Իր երեխաների, իր ժողովրդի մասին խոսեց Նոր Զելանդիայի ներկայացուցիչ տիկին Լեյը: Ցասումով լի էր պրոֆեսոր Կաորու Յասուի ելույթը:

— Ճապոնական ժողովուրդն իր մաշկի վրա զգացել է ատոմային մահաբեր զենքի կործանարար ուժը: Ճապոնացի շատ երեխաներ մնացել են որբ, շատերն էլ ընդմիշտ հաշմանդամ են դարձել,— պատմում էր նա և պատվիրակները երևակայությամբ տեսնում էին ոչ միայն այդ երկրի, այլև Ֆրանսիայի, Անգլիայի, Իտալիայի, Իրանի, Մալայայի, Պակիստանի, Քենիայի, Կուբայի երեխաներին, նրանց կյանքը: Որոշ երկրների երեխաներ շատ վաղ հասակից ստիպված են աշխատել. կռացել են թոքախտից, քաղցից, կորցրել են տեսողությունը: Նրանք չգիտեն, թե ինչ է գիրքը, ինչ է խաղը և ատում են կապույտ երկինքը, որովհետև այնտեղից նրանց գլխին ռումբեր են նետում:

Իր ելույթում հնդիկ Կոսամբին պահանջեց, որպեսզի բոլոր ժողովուրդները, անկախ իրենց մաշկի գույնից ու լեզվից, հավասար լինեն: Վիետնամի ներկայացուցիչ Լե Դին Տամը խաղաղություն էր պահանջում, որպեսզի իրենց երեխաների գլխին այլևս երբեք չթափվեն մահաբեր ռումբերը:

Այո՛, երեխաների երջանկությունը, նրանց ժպիտը թանկ է բոլոր ազնիվ, բարի կամքի տեր մարդկանց համար, թանկ են առանձնապես մայրերի համար: Եվ պատահական չէ, որ հանուն իրենց երեխաների երջանիկ ներկայի ու ապագայի, աշխարհի կանայք, մայրերն իրենց պատվիրակներին ուղարկեցին Լոզան, Մայրերի համաշխարհային կոնգրեսին մասնակցելու համար: Նրանք ցույց տվեցին աշխարհին, թե միլիոնավոր կանայք ինչպիսի՜ ահաբեկիչ ուժ են նոր պատերազմի նախապատրաստման դեմ: Կոնգրեսում ներկայացուցիչներ կային համարյա բոլոր երկրներից: Սովետական Միությունից կոնգրեսին մասնակցում էր երկու հերոս զավակների՝ Զոյայի և Շուրայի մայր՝ Ե. Կոսմոդեմյանսկայան, ֆրանսիական Կոնգոյից՝ Վերոնիկա Բոլեսոն, Արևմտյան Գերմանիայից՝ Իրմգարդ Բրիկսը, Ճապոնիայից՝ Միկկո Յամանկշին և շատ ու շատ ուրիշներ: Պատվիրակներն իրենց ելույթներում հիշատակում էին Օրադուրի, Հիրոսիմայի, Ստալինգրադի, Վարշավայի, Լիդիցայի անունները, որոնք դարձել են պայքարի և արիության սիմվոլ:

— Ո՛չ, պատերազմ չի լինի: Մենք այդ թույլ չենք տա,— այսպես էին վերջացնում իրենց խոսքը կոնգրեսի մասնակիցները:

Այո՛, պատերազմ չի լինի. չի՛ լինի, որովհետև այդ են կամենում ժողովուրդները, բոլոր բարի կամքի տեր մարդիկ:

*Ժ. ՄԱԴՈՅԱՆ*

*(Խաղաղության կողմնակիցների Համամիութենական կոնֆերանսի դելեգատ)*



# ՎՈԼՈԴՅԱ ՈՒԼՅԱՆՈՎ*

(Հիշողություններ Վ. Ի. Լենինի մանկական և պատանեկան տարիների մասին)

Ն. ՎԵՐԵՏԵՆՆԻԿՈՎ

## ԶԲՈՍԱՆՔՆԵՐԸ

*Հաճախ ուշ երեկոյան Վոլոդյան, ես և մյուս մորաքրոջս տղան շրջում էինք Կոկուշկինոյից Թաթարական Չերեմիշևո տանող ճանապարհին և խոսում դեսից-դենից։*

*Մեզանից մեկն ու մեկը խոսում էր, իսկ Վոլոդյան ատամների արանքից շվշվացնում և միաժամանակ լսում, երբեմն էլ կտրուկ ու կրակոտ դիտողություն էր անում։ Չեմ հիշում, թե ով հարց բարձրացրեց, թե ինչու ոսկին այդպիսի դեր ու նշանակություն ունի։ Մորաքրոջս տղան այսպիսի միտք արտահայտեց. (ի միջի այլոց ավելի ընդարձակ է, քան ես ասում եմ).*

*— Եթե բոլորը համաձայն լինեին նշանակություն չտալ ոսկուն, այդպես ավելի լավ կապրեինք։*

*Վոլոդյան ընդհատելով շվշվոցն ասաց.*

*— Եթե բոլոր հանդիսատեսները թատրոնում փռշտային միաժամանակ, ապա պատերը փուլ կգային։ Բայց ինչպե՞ս անել դա։*

*Այսպիսի կարճ ռեպլիկներով նա հաճախ տապալում էր մեր շատախոս դատողությունները։*

*Այդ նույն ամառը Վոլոդյան իմ ուշադրությունը դարձրեց գրաքննադատներ Բելինսկու, Դոբրոլյուբովի և Պիսարևի վրա։ Վերջինով ես շատ տարվեցի, բայց նրա ստեղծագործությունները դժվար էին ճարվում, որովհետև արգելված էին։*

*Մի անգամ ես այն միտքն արտահայտեցի, թե հարկավոր չէ հեղինակությունների առաջ գլուխ խոնարհել և որպես օրինակ բերեցի իմ մորաքրոջ տղաներից մեկին, որը հիանում էր իր ավագ եղբորով և խոնարհվում նրա առաջ։*

*— Իմ կարծիքով,— ասացի ես,— պետք է ղեկավարվել միայն սեփական խելքով ու գիտելիքներով։*

*Վոլոդյան ինձ հետ չհամաձայնեց, ապացուցելով, որ դա ճիշտ չէ, քանի որ մենք ինքներս դեռևս շատ բան չգիտենք և ոչ մի վատ բան չկա, եթե ավագ եղբոր հեղինակությունն ավելի բարձր լինի։*

*Մի ուրիշ անգամ ես դժգոհություն արտահայտեցի մեծ եղբորիցս, որը հին լեզուների դասատու էր, գտնելով, թե նա շատ չոր և տխուր մասնագիտություն է ընտրել։ Բայց Վոլոդյան ճարպկորեն պաշտպանեց Սաշային, ասելով, որ նա Սիմբիրսկում իրեն լատիներեն դասեր է տվել և դրանք շատ հետաքրքիր են եղել։*

## ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆՆԵՐ ԳԻՄՆԱԶԻԱՅԻ ՄԱՍԻՆ

*Վոլոդյան շատ էր պատմում նաև Սիմբիրսկի ուրիշ դասատուների մասին։ Օրինակ՝ մաթեմատիկայի ուսուցչի մասին, որը կշտամբել էր դասը չիմացող մի աշակերտի. «Ի՞նչ է, եղբայր իմ, դասդ չգիտես, երևում է... Կանգնեմ Սվիյագայի ափով, ձեռքերը կողքերիս դրած»։ Սրանով նա ակնարկել է այն երգի խոսքերը, որ երգում էին Սվիյագա գետի ափերին և Սիմբիրսկի բուլվարներում զբոսնելիս։*

*Գիմնազիայում Վոլոդյան սովորում էր ֆրանսերեն և գերմաներեն, ինչպես ընդունված էր Սիմբիրսկում. բայց նա բացառիկ հիշողություն ուներ և չէր դժվարանում։*

*Իլյա Նիկոլայևիչը վախենում էր, որ Վոլոդյան ունենալով փայլուն ընդունակություններ, ամեն ինչ էլ նրան այդքան հեշտ էր հաջողվում, իր մեջ չի մշակի աշխատասիրություն։ Այդ պատճառով նա ոչ միայն ինքն էր խուսափում Վոլոդյային գովելուց, այլև մյուսներին էլ թույլ չէր տալիս, «գովաբանել» նրան։*

*Խոսելով գիմնազիայի մասին, Վոլոդյան ինձ պատմեց այսպիսի մի դեպք։ Նոր լեզուների դասերին միացրել են հիմնական և զուգահեռ դասարանները։ Եվ ահա զուգահեռ դասարանի առաջավոր աշակերտը (կարծեմ Պյերոն) խնդրել էր Վոլոդյային, որ թույլ տա նրանից արտագրել գերմաներենի թարգմանության բառերը։*

*— Եվ ի՞նչ, դու տվեցի՞ր,— հարցրի ես։*

*— Իհարկե, տվեցի... բայց նա ի՞նչ առաջավոր աշակերտ է որ։*

*— Մի՞թե քեզ հետ երբեք չի՞ պատահել, որ դասդ չպատրաստես,— ասացի ես։*

*— Երբեք չի եղել և չի էլ լինի,— ընդհատեց Վոլոդյան։*

*Ընդհանրապես նրան յուրահատուկ էր այդպես կարճ ու վճռականորեն արտահայտվելը։*

* Սկիզբը «Պիոներ» № 4, 5, 6, 7։

*Վոլոդյայի խոսքերը գործից երբեք չէին տարբերվում նույնիսկ այդ հասակում։ Գիմնազիայի առաջին դասարանից մինչև վերջինը նա առաջավոր աշակերտ է եղել և դասարանից դասարան է փոխադրվել առաջին պարգևով։*

## ԱՄԲԱՐՏԱԿԻ ՃԵՂՔՎԵԼԸ

*Մի անձրևային օր, մինչև գիշերվա ժամը երկուսը նստելուց հետո, ես ու Վոլոդյան գնացինք գետը՝ քնելուց առաջ լվացվելու համար։*

*Անձրևն արդեն կտրվել էր, սկսում էր լուսանալ։ Հնարավոր չէր անցնել դեպի լողարան, որովհետև կամուրջները երևում էին ջրի երեսին։*

*Մենք տեղն ու տեղը գլխի ընկանք, որ անընդմեջ անձրևից լճակը բարձրացել է։ Մեզ դցեցինք ամբարտակի վրա։ Հանկարծ տեսանք, որ ջուրը գալիս է արդեն ամբարտակի վրայով։*

*Ես առաջարկեցի բացել փականքը, բայց Վոլոդյան առարկեց, թե մեզ մոտ ո՛չ պարան կա, ո՛չ նիգ, ո՛չ կարապիկ և այդ պատճառով մենք այդ գործը չենք կարող գլուխ բերել. հարկավոր է հենց հիմա արթնացնել ջրաղացպանին։*

*Եվ մենք թակեցինք ջրաղացպանի խրճիթի լուսամուտը։ Քնաթաթախ ջրաղացպանը վեր թռավ և անհույս թափահարեց ձեռքերը. ուրեմն ոչինչ անել չէր կարելի։ Դեռ հինգ րոպե չէր անցել, երբ լսվեց մի թեթև, կարծես նախազգուշացնող շրխկոց, որին շուտով հաջորդեց մի սարսափելի դղրդյուն և ամբողջ ջուրը աղմուկով ու վիթխարի հորձանքով չորս մետրանոց բարձրությունից խուժեց ներքև, խորտակելով ու տանելով փայտե և հողե ամրությունները։ Թափվող ջուրը ծածկված էր մշուշով, ասես ծուխ լիներ։*

*Հոյակապ պատկեր էր։ Մեր աչքերի առջև լճակն արագորեն դատարկվեց, բաց անելով իր անճոռնի տղմոտ ափերը։ Լճակի խորքում մնաց միայն մի փոքր գետակ։*

*— Ասես հրդեհից հետո լինի...— նկատեց Վոլոդյան։*

*Եվ իրոք, ինչպես հրդեհի տեղն է տխուր հիշեցնում քիչ առաջ կանգնած տան մասին, այդպես էլ դատարկվող լճակը հիշեցնում էր այն գեղեցիկ ջրահայելին, որը խաղաղ ընկած էր կանաչ ափերի շրջանակի մեջ, իսկ հիմա սևացած, կարծես թե դատարկված ու այրված լիներ...*

*Սակայն ամբարտակի այդ տխուր ավերածությունը կամ ինչպես ասում էին Կոկուշկինոյում՝ «լճակի նողկալի կորուստը» ինձ ու Վոլոդյային հաճույք պատճառեց, երբ գործի անցան պատռված ամբարտակը վերականգնելու համար։*

(Շարունակելի)




## Խաղաղության




Լեհաստանի մայրաքաղաք Վարշավան տոնական տեսք էր ընդունել: Ստադիոններում և շենքերի վրա փողփողում էին բազմերանգ դրոշակներ: Փողոցներում, զբոսայգիներում, հրապարակներում լսվում էին տարբեր լեզուներով խոսակցություններ, աշխարհի բազմաթիվ ժողովուրդների երգ ու երաժշտություն:

Այդ օրը բացվեց երիտասարդության Համաշխարհային հինգերորդ փեստիվալը: Վարշավա եկան աշխարհի բոլոր երկրների երիտասարդները: Այստեղ իրար հանդիպեցին հնդիկն ու անգլիացին, չինացին ու ամերիկացին, աֆրիկացին ու կորեացին, ռուսն ու ճապոնացին: Նրանք մեկը մյուսի լեզու չէին հասկանում, բայց բոլորի նպատակն էլ մեկ էր՝ պայքարել խաղաղության համար: Եվ հազարավոր մարդիկ բարեկամաբար սեղմում էին միմյանց ձեռքերը: Բոլորի շուրթերին էին «խաղաղություն և բարեկամություն» բառերը:

Վարշավայի բնակիչները գրկաբաց ընդունեցին հազարավոր պատանիներին ու աղջիկներին,

որոնք եկել էին երջանիկ ապագայի նկատմամբ իրենց բուռն ձգտումներն արտահայտելու։

Վարշավայում կրկին անգամ հանդիպեցին բարեկամներն ու ծանոթները։

— Մենք եղբայրներ ենք,— միաձայն ասում էին ֆեստիվալի մասնակիցները, դիմելով սովետական երիտասարդությանը, որը միշտ էլ պայքարել է խաղաղության և ժողովուրդների բարեկամության համար։

Նրանք միմյանց պատմեցին, թե ինչպես են պայքարել խաղաղության համար, ինչ երազանքներ ու ձգտումներ ունեն։ Սովետական երիտասարդները մյուսներին պատմեցին իրենց ստեղծարար աշխատանքի մասին։ Ֆեստիվալի օրերին եղան բազմաթիվ մրցումներ, համերգներ ու ելույթներ, որտեղ երիտասարդությունը ցույց տվեց իր ուժը, կամքն ու միասնությունը։ Ամեն օր ավելի քան յոթանասուն միջոցառում էր լինում։

Ֆեստիվալի բացման օրը, Վիսլա գետի մոտ շահագործման հանձնվեց Լեհաստանի նորակառույց ստադիոններից մեկը։ Դա շատ մեծ մարգադաշտ է։ Նրա նստարանների երկարությունը հասնում է երեսունհինգ կիլոմետրի։ Այդտեղ կարող են տեղավորվել յոթանասուն հազար մարդ։ Լողի մրցումները տեղի էին ունենում հսկայական ջրավազաններում։

Այդ բոլորը կառուցել էին իրենք Լեհաստանի երիտասարդները։ Ֆեստիվալի բացման նախօրյակին էր, որ Վարշավայի աշխատավորությունը ստացավ նաև մի թանկագին պարգև՝ Ի. Վ. Ստալինի անվան Գիտության և կուլտուրայի հրաշալի պալատը։ Ստադիոններում, հրապարակներում, վազքուղիներում և ջրավազաններում պատանիներն ու աղջիկները մրցում էին սպորտի 23 ձևերից։

Վարշավայի մոտ, 110 հեկտար տարածության վրա, կառուցվել է ֆեստիվալի ավան։ Սնկերի պես բարձրացել են սպիտակ պավիլիոնները, խաղի հրապարակներն ու պարտեզները։

Ֆեստիվալի օրերին պատանիներն ու աղջիկները ծանոթանում էին ժողովուրդների արվեստին ու կուլտուրային, լսում նրանց երգերը, դիտում հիանալի պարերը։ Սովետական պատանիների ու աղջիկների ելույթներն ամեն տեղ ընդունվում էին բուռն ծափերով և ցնծալի բացականչություններով։ Դա ցույց էր տալիս աշխարհի երիտասարդության սերն ու համակրանքը Սովետական Միության նկատմամբ։

Որոշ երկրների երիտասարդներ չկարողացան մասնակցել ֆեստիվալին։ Բայց նրանց մտքերը խաղաղության մարտիկների հետ էին։ Իսկ Աֆրիկայի մի քանի երկրներ միջոցներ չտրամադրեցին իրենց երիտասարդներին։ Լեհաստանի, Ֆրանսիայի, Բուլղարիայի և այլ երկրների պատվիրակներն իրենց օգնությունն ուղարկեցին աֆրիկյան երկրների դելեգատներին, որպեսզի նրանք կարողանան մասնակցել ֆեստիվալին։

Աշխարհի երիտասարդության ներկայացուցիչները համաշխարհային հինգերորդ ֆեստիվալում ցուցադրեցին իրենց անսասան կամքը խաղաղության ու անվտանգության պահպանման, երջանիկ ու լուսավոր ապագայի կառուցման համար։

*Ս. ՍԱՂԱԹԵԼՅԱՆ*

# ՀՐԱՇԱԼԻ ՑՈՒՑԱՀԱՆԴԵՍԸ

*Բ. ՀՈՎՍԵՓՅԱՆ*
(Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի գյուղատնտեսական բաժնի կոնսուլտանտ)

*Ֆոտո՝ Վ. ՍԵՎՈՅԱՆԻ*

*Հուլիսյան վաղ առավոտ էր, իսկ պատանիները արդեն աշխատում էին դպրոցամերձ հողամասում։ Ամեն մեկն իր աշխատանքն ուներ։ Ծառերն էին ջրում, լոլու մարգերը քաղհանում, եգիպտացորենի արտը մաքրում մոլախոտերից…*

*— Ռուբի՛կ, պատրաստվիր մեկնելու,— մոտենալով նրանց, ասաց բնագիտության դասատու Արշալույս Գյոզալյանը։*

*Սևաչյա պատանին բարձրացրեց գլուխը։ Նա շփոթմունքից կարմրել էր։*

*— Ո՞ւր,— հարցրեց նա մեխանիկորեն։*

*Դասատուն մոտեցավ Ռուբիկին, ժպտաց և խառնելով պատանու գանգուրները, ասաց.*

*— Գուշակիր, եթե կարող ես։*

*Երեխաները նկատեցին այդ, թողեցին աշխատանքը և հավաքվեցին նրանց շուրջը։ Յուրաքան-*

շյուն աշխատում էր իմանալ, թե ուր է մեկնելու Ռուբիկը. բայց դասատուն այլևս ոչինչ չասաց։ Նա Ռուբիկին պարզեց մի թուղթ։ Ռուբիկն ավելի շփոթվեց, բաց արեց թուղթը և բացագանչեց.

— Հեռագի՞ր...

Երեխաներն իրար նայեցին։

Ռուբիկը բարձրաձայն կարդաց. «Ռուբիկի, Ամալյայի և Վեներայի հետ միասին հուլիսի հինգին ուղևորվեցեք Մոսկվա՝ Համամիութենական Գյուղատնտեսական ցուցահանդեսին մասնակցելու համար»։

Ռուբիկն աչքերին չէր հավատում. նա մեկ էլ կարդաց հեռագիրը։ Նրա ձեռքից խլեց Ամալյան ու ինքն էլ կարդաց։

Պատանիներն իրար անցան, աղմկեցին։ Նրանցից ո՞վ չէր երազում Մոսկվա գնալու մասին...



Մի խումբ բնասերներ ցուցահանդես մեկնելուց առաջ

Եվ նրանք սկսեցին հուզված խոսել։

— Ցուցահանդեսը մշտական է,— բացատրեց դասատուն,— եկող տարի էլ է լինելու. երևի այն ժամանակ կգնան նրանք, ովքեր ավելի լավ կաշխատեն, քան Ռուբիկը, Ամալյան ու Վեներան։

Այդ դեպքից հետո անցան օրեր։ Եվ մի երեկո էլ գնացքը Երևանից Մոսկվա տարավ պատանի բնասերներին։



Գնացքը հասավ Մոսկվա։ Երեխաները դուրս եկան քաղաք և աչքեցին անսովոր տպավորություններից։ Այստ ավտոմեքենան սլացավ ասֆալտապատ լայն խճուղիով և կանգ առավ հեքիաթային պարտեզի հաղթական կամարների առաջ։ Երեխաներն իրենց շուրջը նայելով իջան և մտան ներս։

— Մենք գտնվում ենք Համամիութենական Գյուղատնտեսական ցուցահանդեսի սահմաններում, որի նմանը չկա աշխարհում,— ասաց դասատուն և նրանք առաջ գնացին։

Լայն ծառուղիներում նրանց դիմավորեց ցուցահանդեսի էքսկուրսավար կապուտաչյա Օլգա Լվովնան։

— Այստեղ են գալիս ոչ միայն կոլտնտեսականներ,— ասաց նա,— այլև բանվորներ, ուսանողներ ու միջնատարակարգային կայանների աշխատողներ, գիտնականներ ու շատ ուրիշ մարդիկ։ Գալիս են նաև պատանի բնասերներ։ Անցած տարվա ընթացքում ցուցահանդես են այցելել ութ միլիոն մարդ, այդ թվում՝ ինը հարյուր արտասահմանյան պատվիրակություն, որոնք բաղկացած էին հիսունչորս երկրների ներկայացուցիչներից։

Ցուցահանդեսի տերիտորիայում աճեցրել ու բազմացրել են հինգ միլիոն ծաղիկ ու կես միլիոն ծառ ու թուփ։

Օլգա Լվովնան մի պահ լռեց, նայեց պատանիների հիացմունքով լի դեմքերին, մտերմաբար ժպտաց ու շարունակեց.

— Մի՛ շտապեք, փոքրիկնե՛րս. ինքներդ կտեսնեք ամեն ինչ,— ասաց և պատանիներին առաջնորդեց սաղարթախիտ ծառուղիով, որի երկու կողմում տասնչորս գրանիտե շատրվան կար։

Պատանիների առջև բացվեց մի ահագին հրապարակ։ Հրապարակի կենտրոնում կանգնած էր ցուցահանդեսի գլխավոր պավիլիոնի փառահեղ շենքը։ Նրա շուրջը տեղավորված էին եղբայրական տասնվեց ռեսպուբլիկաների պավիլիոնները։

Շրջապատի գեղեցկությամբ հիացած երեխաները մտան մի նոր ծառուղի։

Վերջապես նրանք հասան «Պատանի բնասերի» այնքան բաղձալի պավիլիոնին։ Էքսկուրսավարը մեկ առ մեկ ցույց տվեց բոլոր սրահները, պատմեց պատանի միչուրինականների ու տեխնիկների գործերի մասին։ Երեխաները երկար մնացին այդ պավիլիոնում։ Նրանց հետաքրքրում էր յուրաքանչյուր սենյակ։ Նրանք ամեն մի արժեքավոր աշխատանքի մասին նշումներ էին անում իրենց բլոկնոտներում, որպեսզի չմոռանան և նույնը կատարեն իրենց հայրենիքում։

— Այս սենյակը Անդրկարպատյան երկրամասի Մակարևկայի յոթնամյա դպրոցի պատանի միչուրինականներինն է,— պատմում էր էքսկուրսավարը։— Նրանք շատ հետաքրքիր փորձեր են անում. եգիպտացորենի, կարտոֆիլի, բանջարեղենի և

*տեխնիկական բույսերի բարձր բերք են ստանում։ Այս խմբակը մասնակցել է նաև անցյալ տարվա ցուցահանդեսին և նույնիսկ պարգևատրվել առաջին կարգի դիպլոմով. իսկ դա շատ մեծ պատիվ է։*

*— Այս սենյակն էլ նվիրված է Հայաստանի պատանի բնասերներին։*

*Օլգա Նիկոլաևնան փոքր ինչ լռեց, նայեց երեխաների հուզմունքից վառվող դեմքերին, ու բարձր ձայնով հարցրեց.*

*— Երեխանե՛ր, չկա՞ արդյոք ձեր մեջ Շամշադինի շրջանի Չինչին գյուղի յոթնամյա դպրոցից որևէ մեկը։*

*Այստեղ դասատուն առաջ մղեց Ռուբիկին, Ամալյային ու Վեներային։ Վերջիններս մինչ այդ հուզմունքից կարմրել ու կուչ էին եկել ընկերների թիկունքում։ Նրանք առաջ եկան և սկսեցին պատմել, թե ինչպես են օգնել կոլտնտեսությանը խոտ, ծխախոտ, կարտոֆիլ ու կանաչեղեն հավաքելու գործում, թե ինչպես են ծառազարդել գյուղը, տնկել հազար հինգ հարյուր ծառ, թե ինչպես օգնեցին անտառտնտեսությանը վայրի տանձի ու խնձորի սերմեր հավաքելով։ Նրանք պատմեցին նաև, թե ինչպես են դպրոցամերձ հողամասից պոմիդորի, վարունգի, լոբու, եգիպտացորենի ու կաղամբի բարձր բերք ստացել։*

*Երբ երեխաները վերջացրին իրենց խոսքը, նկատեցին, որ իրենց լսում էին ոչ միայն Հայաստանից, այլև շատ ուրիշ ռեսպուբլիկաներից, եկած մարդիկ, որ գտնվում էին պավիլիոնում։*

*Էքսկուրսիան շարունակվեց։ Պատանիների ուշադրությունը գրավեց հիդրոէլեկտրակայանի գործող մակետը, տարբեր մեքենաների, գործիքների, դպրոցական կահավորման իրերի և շատ ուրիշ հետաքրքիր մոդելների ստենդը։ Դրանք պատրաստված էին պատանի բնասերների ձեռքով։ Երբ էքսկուրսավարը ցույց տվեց մակետներից մեկը, Երևանի Կալինինի անվան դպրոցի աշակերտներ Խաչատուրն ու Հրաչիկը բարձրաձայն գոչեցին.*

*— Վա՜յ, սա մեր աշխատանքն է։*

*Նրանք մոտեցան և հմուտ ձեռքերով շարժման մեջ դրեցին մակետը։ Այնուհետև մանրամասն պատմեցին, թե ինչպես իրենք չորս տարվա ընթացքում համառությամբ ու համբերությամբ խմբակի ղեկավար Աղասի Հարությունյանի ղեկավարությամբ և նշանավոր ճարտարապետների ու գյուղատնտեսների հսկողության ներքո պատրաստեցին Աշտարակի շրջանի Ոսկեվազ գյուղի կոլտնտեսության էլեկտրիֆիկացման մակետը։*

*Էքսկուրսավարը շատ նոր պավիլիոններ ցույց տվեց։*

*Հանկարծ երեխաներից մեկը բարձրաձայն գոչեց.*

*— Հայկական պավիլիո՜նը...*

*Նրանք ներս մտան։ Ամեն ինչ ծանոթ էր այդտեղ։ Ե՛վ առաջավոր կոլտնտեսությունների ու սովխոզների, և՛ մեքենատրակտորային կայանների կատարած աշխատանքները, և՛ այն փոքրիկ մրգաշատ այգին, որ կար այդտեղ։ Այնուհետև էքսկուրսանտներն անցան գյուղատնտեսության մեխանիզացիայի և էլեկտրիֆիկացիայի պավիլիոնը։ Այստեղ էլ նրանք տեսան մեքենաներ և էլեկտրիֆիկացման նորանոր հաջողությունները։*

*Շատ բան տեսան պատանի բնասերները և շատ բան սովորեցին այդ քաղաք-ցուցահանդեսում։*

*Մի քանի օր հետո գնացքը պատանի բնասերներին տանում էր Հայաստան։*

# ԵՐԵՔ ՏԱՐԻ ՀԵՏՈ

ԳՐ. ՔԵՇԻՇՅԱՆ

Ֆոտո՝ Վ. ՍԵՎՈՅԱՆԻ

*Թենիսի կորտի շուրջը հավաքված հարյուրավոր պատանիներ ծափահարում են, ոգևորում մրցողներին։ Գնդակը արագ անցնում է մի կիսադաշտից մյուսը։ Պայքարը գնալով ավելի լարված բնույթ է ստանում։*

*— Ռուբիկն ու Ռոբերտը կհաղթեն, անպայման կհաղթեն,— բարձր ձայնով ու ոգևորված վստահեցնում էր մի աղջիկ իր ընկերուհուն։*

*Միայն մարզիչն էր մտահոգ։ Նա առանձնապես չէր ոգևորվում իր սաների խաղով։ Ուշադիր հետևում էր նրանց յուրաքանչյուր շարժմանը, յուրաքանչյուր հարվածին և աշխատում էր զսպել, չարտահայտել իր հուզմունքը։*

*Նրա կարծիքով տղաները վատ էին խաղում, իրենց հնարավորություններից ցածր։ Երևանի առաջնության զույգախաղի եզրափակիչ մրցումն էր, իսկ պատանիներն այնքան անփույթ էին վերաբերվում, վտանգի ենթարկում հաղթանակը։*

*Առաջին պարտիայի արդյունքը բավարար էր, թեև կարող էին 6 : 3-ից ավելի լավ հաշվով տա-*

նել։ Իսկ երկրորդ պարտիան ոչ մի լավ բան չի խոստանում։ Խաղի հաշիվը 4 : 3 է, իր սաների օգտին, բայց ահա Ռուբիկը գնդակին է մոտենում ու ճիշտ ձևով և հարվածում է դիտողների վրա տպավորություն թողնելու, ծափեր խլելու ակըն-հայտ մտադրությամբ։ Գնդակը կորտից դուրս է թռչում։

Մարզիչը կծում է իր շուրթերը, որպեսզի բարձրաձայն, բոլորի ներկայությամբ նկատողություն չանի։

— Այդ ի՞նչ ես անում, այդ ի՞նչ ես անում,— ինքն իր մեջ խոսեց նա։



Ռուբիկ Գզոյանը խաղի ժամանակ

«Հակառակորդները» ավելի լարեցին իրենց ուժերը, ավելի կանոնավորեցին խաղը։ Ահա նրանք հավասարեցրին հաշիվը. հետո էլ առաջ անցան։ 5 : 4 հօգուտ «Սպարտակի» պատանիների զույգի։ Սակայն այդ էլ չազդեց Ռուբիկի և Ռոբերտի վրա։ Երկրորդ պարտիան ավարտվեց «Սպարտակ» ընկերության պատանիների օգտին։

Մարզիչ Ռաֆիկ Ռաֆայելյանը մոտեցավ տղաներին և շեշտակի նայեց նրանց աչքերին։

— Ի՞նչ է պատահել,— հարցրեց նա խիստ։

Տղաները չպատասխանեցին։ Նրանք խոնարհեցին իրենց հայացքը։

— Եթե ձեզ ծափեր են պետք, ես կասեմ, որ մրցումից հետո բոլորը ծափահարեն. իսկ թենիսը, սպորտը սիրում է լրջություն։ Ես ձեզանից գոհ չեմ։

Նա հեռացավ։ Դատավորի սուլիչը մրցողներին դաշտ հրավիրեց, իսկ տղաները դեռ կանգնել էին անխոս, նույնիսկ իրար չէին նայում։

Սկսվեց երրորդ, վճռական խաղը և կարծես ամեն ինչ միանգամից փոխվեց։ Ռուբիկն ու Ռոբերտը կարծես նույն տղաները չլինեին։ Նրանք իրար հետևից սկսեցին շահել խաղերը։ Պարտիան ավարտվեց 6 : 0 հաշվով։

Խաղից հետո ընկերները շնորհավորում էին տղաներին, իսկ նրանք հայացքով փնտրում էին իրենց սիրելի մարզիչին, որը հեռվում, դեռևս դժգոհ, ման էր գալիս 26 կոմիսարների անվան այգու հաստարուն ծառերի ստվերում։



Երեք տարի առաջ էր։ Ռաֆիկ Ռաֆայելյանը նստած էր Ստալինյան ռայոնի առաջին սպորտ դպրոցի ուսուցչանոցում, երբ առանց թույլտվության խնդրելու դուռը բացեցին և համարձակ քայլերով ներս մտան մի քանի պատանի։

— Մենք ուզում ենք թենիս խաղալ սովորել,— ասաց նրանցից մեկը, ուժեղ կազմվածքով, շագանակագույն և գանգուր մազերով մի տղա։

Մյուսները հաստատեցին նրա խոսքը.

— Ուզում ենք սովորել…

Ռաֆիկը նայեց նրանց։ Նրան դուր էր գալիս, որ նրանք այդպիսի ցանկությամբ դիմում էին իրեն. բայց դուր չէր գալիս նրանց այդքան համարձակ, այդքան ինքնավստահ շարժուձևերը։

— Իսկ դուք գիտե՞ք, որ այնքան էլ հեշտ չէ թենիս խաղալը։ Անհրաժեշտ է լուրջ պարապել, հետևել մարզիչի խորհուրդներին։

— Մենք ուզում ենք սովորել…— խոսեց առաջին տղան,— ձեր բոլոր ասածներն էլ կկատարենք։

Դրանք Ռուբիկն ու նրա ընկերներն էին՝ Սարիբեկը, Հակոբը և մի քանի ուրիշներ։

— Իսկ դպրոցում ինչպե՞ս եք սովորում,— հարցրեց Ռաֆիկը,— չկարողանալով անմիջապես որոշում ընդունել։

Տղաներն ուշացումով պատասխանեցին.

— Ոչի՞նչ, սովորում ենք,— նորից խոսեց Ռուբիկը,— երկտարեցի չենք։

— Իսկ գիտե՞ք, որ սպորտսմեն դառնալու համար անհրաժեշտ է լավ սովորել,— ասաց Ռաֆիկը,— ես ծույլ աշակերտներ ունենալ չեմ ուզում։

— Դե՛, մենք ծույլ չենք... մենք կսովորենք... —մի քիչ կմկմալով խոստացավ Ռուբիկը։

— Կընդունենք,— ասաց Ռաֆիկը,— կընդունենք, բայց որ դժգո՞հ եղա, անմիջապես կդադարեցնեմ պարապմունքները։

Պարապմունքներն սկսվեցին։ Տղաները լավ էին հաճախում։ Եվ արդյունքը շուտով զգալի դարձավ։

Մեծ հաջողություններ էր ունենում հատկապես Ռուբիկը։ Մեծ աշխատասիրությունը, մարզիչի խորհուրդներին հետևելն անմիջապես արդյունք տվեցին։ Նա հեշտությամբ սկսեց հաղթել իր ընկերներին։

Մի անգամ մարզիչն անակնկալի եկավ։ Նա մի օր պատահաբար հանդիպեց իր սաներին, որոնք իրար հետ գնում էին կատակելով ու ծիծաղելով։ Ռաֆիկն ուզում էր ձայն տալ նրանց և խոսել հետները, երբ հանկարծ քարացավ իր տեղում։

Ռուբիկը գրպանից հանեց ծխախոտի տուփը և սկսեց ծխել։ Նրան հետևեցին տղաներից մի երկուսը։ Ռաֆիկն ակամա հետևեց նրանց։ Տղաները ծխում էին, իրար հետ խոսում անվայել բառերով։

Ռաֆիկն այդ օրը նրանց ոչինչ չասաց, բայց գիշերը երկար, շատ երկար մտածում էր։ Ինչպե՞ս անել, ի՞նչ միջոցի դիմել այդ երեխաներին ուղղելու համար։

Հաջորդ պարապմունքներին նա առանց ասելու, որ տեսել էր նրանց՝ երկար խոսեց ծխելու վնասների, հասարակության մեջ իրենց վայելուչ պահելու մասին։ Տղաները լսում էին անուշադիր։

Մի քանի օր հետո Ռաֆիկն ստուգեց իր խաղերի արդյունքը և ցավով համոզվեց, որ համարյա փոփոխություն չկար նրանց մեջ։ Նա չհուսահատվեց։ Տարբեր առիթներով և տարբեր վայրերում նա միշտ վերադառնում էր նույն թեմային, բայց աշխատանքի արդյունքն աննշմարելի էր։ Նրան թվաց, թե իզուր էր իր աշխատանքը։ Բայց պարտված լինելու միտքը հանգիստ չէր տալիս նրան։ Եվ մի օր նա փորձեց իր վերջին զենքը։

Տղաները պարապմունքի եկան ճիշտ ժամին։ Պատրաստ վիճակում նրանք սպասում էին մարզիչին։

— Ես բոլորին էլ կհաղթեմ,— ասում էր Ռուբիկը առարկություն չվերցնող տոնով։— Ինչի վրա ուզում եք գրազ գանք։

— Չես կարող,— առարկում էր մեկը։

— Գրազ գանք։

— Մի տուփ սիգարեթի...

Տեսնելով մարզիչին, նրանք դադարեցրին իրենց վեճը։ Ռաֆիկը մոտեցավ և հանգիստ կանգնելով բոլորի մեջտեղը, ասաց ցածր, բայց վստահ ձայնով.

— Այսօր չենք պարապելու։

— Ի՞նչ է պատահել,— հետաքրքրվեցին տղաները։

— Այլևս չենք պարապի,— ասաց Ռաֆիկը նույն տոնով։

— Ինչո՞ւ,— հուզվեցին և մոտ եկան տղաները։

Ռաֆիկը խիստ նայեց նրանց։

— Որովհետև բոլորդ էլ ծխում եք և... Վերջ, այլևս չգաք ինձ մոտ։



Մարզիչ Ռ. Ռաֆայելյանը Ռ. Գդոյանի և Ռ. Ակուլյանի հետ

Ռաֆիկը հեռացավ։ Տղաները մնացին շվարած։

— Ո՞վ է մատնել մեզ,— սպառնալից շուրջը նայելով ասաց տղաներից մեկը։

Բոլորն իրար նայեցին։ Ո՞վ է մատնել։ Ռուբիկն ասաց.

— Նա մեզ տեսած կլինի. ինչքա՜ն ժամանակ է՝ խոսում է դրա մասին։

Նորից լռություն տիրեց. հետո նրանք ցրվեցին։

Եվ այս դեպքում հաղթեց սպորտի հանդեպ նրանց ունեցած սերը։ Մի քանի օր հետո նրանք առանձին-առանձին գնացին իրենց մարզիչի մոտ և խոստացան այլևս երբեք չծխել, անվայել խոսքեր չասել։

Ռաֆիկը դժվարությամբ ընդունեց նրանց,

չհավատաց նրանց, բայց տղաները հարգեցին իրենց խոստումը։

***

Իսկ հիմա ավարտվեցին քաղաքի առաջնության մրցումները։ Ռուբիկ Գզոյանը դարձավ Երևանի չեմպիոն պատանիների գծով։ Ռաֆիկը հեռվից նայում է իր սաներին, որոնք թիմային կարգով գրավեցին առաջին տեղը։ Ռուբիկը շատ լավ արդյունքներ ցույց տվեց։ Բայց մարզիչը դժգոհ է։ Այսօրվա զույգախաղն ապացուցեց, որ նա դեռ բավականին գործ պիտի անի տղաներին լրիվ ուղղելու համար։ Անհրաժեշտ է կոտրել Ռուբիկի գոռոզությունը, Ռոբերտի ծուլությունը։ Տղաներն ուրախ են իրենց հաղթանակով. ընկերները շրջապատել են և գովում են նրանց, բայց մարզիչը մտահոգ է։ Մտածում է, թե ինչպես կլինի այդ տղաների ապագան բնավորության այդպիսի գծերով։ Մարզիչի դեմքը մռայլվում է։

Վերջապես բոլորը գնացին և տղաները մոտեցան Ռաֆիկին։ Նրանք դանդաղ քայլեցին և դուրս եկան այգուց։ Ռաֆիկը լռում էր, իսկ տղաները չէին համարձակվում առաջինը խոսել։

— Գիտե՞ք ինչ կա,— հանկարծ ասաց Ռաֆիկը երկու ձեռքերով գրկելով իր սաների ուսերը,— ես գոհ չեմ ձեզանից, որովհետև ես ավելի մեծ արդյունքներ եմ սպասում։

Տղաներն սպասեցին, որ նա շարունակի։

— Այ, վաղը դուք գնալու եք Լենինգրադ, միութենական մրցումների. բայց ես վստահ չեմ, թե կհաղթեք։ Ես չգիտեմ, թե դուք ինչ հեռագրեր պիտի ուղարկեք ինձ։

— Ինչո՞ւ, դուք մեզ հետ չե՞ք գալիս,— ասաց Ռուբիկը հանկարծ։

— Ոչ, ես էլ եմ պատրաստվելու մրցումների, իսկ ձեզ վրա վստահ չեմ... Պատանիների թիմը տանելու է ընկեր Այվազյանը, իսկ ես ուզում եմ, որ իմ սաները ինձ ամոթով չանեն։

Տղաները չպատասխանեցին։

— Հը՜, ի՞նչ եք ասում, ինչո՞ւ եք լռում,— նրանց դարձավ Ռաֆիկը։

— Վերադառնալուց հետո կպատասխանեմ,— հանկարծ ասաց Ռուբիկը։

— Ես էլ...

Մարզիչը նայեց իր սաներին և նկատեց, որ նրանք առաջվա փոքր երեխաները չեն։ Նրանց հայացքի մեջ արդեն նկատվում էր վճռականություն, իր խոսքերի արժեքն իմացող և այն մինչև վերջ կատարելու կամք ունեցող մարդու վճռականություն։

— Լավ,— ասաց նա,— վաղը ես կգամ կայարան,— իսկ այս բոլորի մասին մենք կխոսենք ձեր վերադարձից հետո։

Նա մտերմորեն սեղմեց տղաների ուսերը և շուտ քայլով հեռացավ նրանց մոտից։ Նրա գնալուց հետո միայն տղաներն իրար աչքերի մեջ նայեցին և համոզվեցին, որ երկուսն էլ նույն բանն են որոշել։

# ԱՍԼԱՆ ԱՄԻՆ

Հ. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ

Նկ. Մ. ՍՈՍՈՅԱՆԻ

Մայրաքաղաքից հեռու մի գյուղում էր ապրում Ասլան ամին։ Ուներ կին, որդիներ, հարսներ, թոռներ։ Ասլան ամին կույր էր։ Տարիներ առաջ առանց ցավելու, առանց որևէ պատահարի, կուրացավ նախ մի աչքը, ապա՝ մյուսը։

Մինչ այդ Ասլան ամին կոլտնտեսության բրիգադիր էր։ Բոլորը նրան սիրում էին ու հարգում։ Դրա համար էլ նրա կուրանալը կոլտնտեսությանը մեծ մտահոգություն պատճառեց։

Կուրության առաջին ամիսներին Ասլան ամին ջղայնանում էր, երբեմն հուզմունքից լաց լինում և շարունակ կրկնում. «Էլ ինչո՞ւ եմ ապրում, ինչի՞ եմ պետք»։

Կինը հաճախ նրան տանում էր կոլտնտեսության գրասենյակը։ Ասլան ամին այնտեղ նստում էր ժամերով, լսում կոլտնտեսականների խոսակցությունը, խորհուրդներ էր տալիս, դիտողություն անում։ Բայց ժամանակի ընթացքում դրանից ձանձրացավ։ Նստում էր փողոցի դռանը, անցնող-դարձողի հետ խոսակցում։ Ասլան ամին աշխուժանում էր, երբ թոռները՝ Նաղին, Թաղին ու Հաբիբը, վերադառնում էին դպրոցից։ Նա դրանցից ոչ մեկին չէր տեսել։

— Պապի՛, ես այսօր էլ հինգ ստացա,— ասում էր Թաղին։

— Ես էլ՝ չորս,— ավելացնում էր Նաղին։

Ասլան ամին նրանց համբուրում էր, շոշափում նրանց երեսը, մազերը, կարծես ուզում էր

*պատկերացնել նրանց դեմքը։ Կանգնեցնում էր կողք-կողքի և ձեռքերով շոշափում նրանց գլուխները։*

*— Նաղին փոքր է, Թաղին նրանից մի քիչ մեծ է, իսկ Հարիրը Թաղուց շատ մեծ է։*

*— Ախր, Հարիրն արդեն պիոներ է, պապի, իսկ մենք նոր ենք դպրոց գնացել,— ասում էր Նաղին։*

*— Դե, բալիկնե՛րս,— ասում էր Ասլան ամին,— գնացեք մի քիչ խաղացեք, հետո նստեցեք դասի։ Ես էլ կնստեմ ձեզ մոտ և կլսեմ, թե ինչ եք սովորում։ Հետո Հարիրն ինձ համար թերթ կկարդա։*

*Մի օր էլ Նաղին ասաց.*



Ասլան ամին աշխուժանում էր...

*— Պապի՛, արի քեզ տանեմ պարտեզը ման ածեմ։*

*— Գնանք, բալես։*

*Դուրս եկան բակը։*

*— Եղանակը տաքացել է, բալես։*

*— Այո, պապի, տաքացել է, գարուն է։ Ա՛յ, ծառերը ծաղկել են...*

*— Բալենին՝ սպիտակ, խնձորենին՝ վարդագույն... Թթենին դեռ տերևներ չունի. ուռին բողբոջել է... Ա՛յ, Ղափլանն էլ ինձ տեսել, վնգստում է։ Տար ինձ նրա մոտ։*

*Շունը վնգստալով փաթաթվեց Ասլան ամու ոտքերին։*

*— Է՜, դու էլ ես ծերացել, Ղափլա՛ն. ձայնդ խռպվել է։ Միայն թե դու ինձ տեսնում ես, իսկ ես քեզ չեմ տեսնում։*

*— Բա որ հանկարծ աչքերդ բացվեն, պապի՛։*

*— Հրաշք կլինի, բալե՛ս, բայց հիմա հրաշքներ չեն լինում։*

*Եվ այսպես, մեկը մյուսի հետևից անցնում էին Ասլան ամու օրերը։ Որդու՝ Սալմանի վերադառնալը բանակից, Ասլան ամուն մեծ ուրախություն պատճառեց։ Մի երեկո կոլտնտեսականները հավաքվել էին Ասլան ամու տանը, որդու գալուստը շնորհավորելու։ Խոսեցին կոլտնտեսության գործերից, օրվա նորություններից։ Սալմանն էլ պատմեց այն վայրերի մասին, ուր եղել էր։*

*— Եկեք Սալմանին, Ասլան ամու փոխարեն, բրիգադիր դարձնենք,— ասաց կոլտնտեսականներից մեկը։*

*— Վատ չի լինի,— ասաց մի ուրիշ կոլտնտեսական։— Իսկ ինչո՞ւ Ասլան ամուն կույր թողնենք։ Ինձ ասացին, որ մոտիկ գյուղից մի կույր ծերունի են ուղարկել Երևան, աչքը բուժել են. հիմա տեսնում է։ Ասլան ամուն էլ ուղարկենք Երևան, թող գնա բուժվի, դա իր աշխատանքը շարունակի։*

*— Դու էլ բան ասացիր, Մահմո՛ւդ։ Լսվա՞ծ բան է, որ կույրը լույս առանա։*

*— Ինչո՞ւ չես ուզում հավատալ, որ կույրերին լույս են տալիս, Ասլա՛ն ամի,— առարկեց կոլտնտեսության նախագահը։— Համաձայնվիր՝ հենց վաղը քեզ Երևան ուղարկեմ։*

*— Լավ, որ ասում ես՝ կգնամ,— ասաց Ասլան ամին։*



*Երեկո է։ Թեյից հետո ակնաբուժական հիվանդանոցի հիվանդները հավաքվել են ընդարձակ դահլիճը։ Ոմանք ռադիո են լսում, ոմանք շախմատ են խաղում, ոմանք լսում են Կարո բիձի հեքիաթները, ոմանք էլ շրջապատել են նորեկ Ասլան ամուն, որ հարցուփորձ անեն, իմանան, թե որտեղացի է, ե՞րբ է կուրացել, ինչու է կուրացել։*

*— Տարիներ առաջ, առանց պատճառի աչքիս լույսն սկսեց պակասել,— սկսեց Ասլան ամին.— վերջը կուրացավ։ Հետո մյուս աչքս էլ կուրացավ...*

*Եվ Ասլան ամին պատմեց իր գլխով անցածը։*

*— Երեք թոռ ունեմ, որոնց չեմ տեսել... Երկու օր առաջ մեր տանը մարդիկ էին հավաքվել։ Նրանք ինձ խորհուրդ տվին՝ գալ այստեղ, որ աչքս բուժեն, ես էլ եկա։*

*— Ճիշտ են ասել,— ասաց մեկը։*

*Մի քանի օր հետո բուժքույրը Ասլան ամուն տարավ վիրահատման սենյակն ու պառկեցրեց*

սեղանին։ Պրոֆեսորը նստած տեղից վեր կացավ ու մոտեցավ սեղանին։ Ասլան ամին մի քանի անգամ լսեց «խըրթ, խըրթ, խըրթ»։ Մի քիչ հետո նա տեսավ պրոֆեսորի դեմքը, ճչաց, գլուխը բարձրացրեց, ոտները շարժեց. ուզում էր վեր կենալ։

— Ո՞վ էր այն մարդը,— գոչում էր նա,— թող գա տեսնեմ, ձեռքերը համբուրեմ։

Բուժքույրը հանգստացրեց նրան.

— Հիմա շարժվել չի կարելի, Ասլա՛ն ամի, մի քանի օր հետո, երբ աչքիդ վիրակապը կարձակեն, նա ինքը կգա քեզ մոտ՝ կտեսնես։

Բուժքույրն Ասլան ամու աչքերը կապեց, տարավ պառկեցրեց մահճակալին և ասաց, որ պետք է մեջքի վրա անշարժ պառկի մինչև հետևյալ օրը։

Երկու շաբաթ հետո Ասլան ամին հպարտ-հպարտ շրջում էր միջանցքներում ու սենյակներում։

— Հակո՛բ եղբայր,— ասում էր նա իր հարևանին,— գիտես ի՞նչ ուրախություն կլինի, երբ թոռներիս ու փոքր հարսիս տեսնեմ... Էլ տանը պարապ չեմ նստի, կաշխատեմ։

Երեք շաբաթ հետո հիվանդանոցից նամակ գրեցին նրա ընտանիքին, որ կարող են գալ նրան տանել։



Ասլան ամին դուրս էր եկել հիվանդանոցի բակը զբոսնելու։ Ժպիտը նրա դեմքից չէր իջնում. նա տեսնում էր բակի ծաղկանոցները, բազմագույն ծաղիկներով, սաղարթապատ ծառերը, փողոցով սլացող ավտոները, տրոլեյբուսները, անցուդարձ անող մարդկանց, հսկա շենքերը և նրա սիրտը լցվում էր անհուն ուրախությամբ։ Մի ամիս առաջ այդ բոլորը թաղված էին անթափանց խավարում...

Այդ ժամանակ հեկեկալով նրա ոտքերին փաթթվեց մի տղա։

— Ո՞վ ես, բալաս, ո՞վ ես դու, ինչո՞ւ ես լաց լինում։

— Ես եմ պապի,— հեծկլտալով պատասխանեց տղան,— Հարիրն եմ, քո թոռը, տես, որ կարողանում ես մենակ ման գալ, ուրախությունից լաց եղա։

— Հարի՞րը... Հարի՞րը,— արցունքն աչքերին ասաց Ասլան ամին,— ուղիղ կանգնիր մի լավ նայեմ աչքերիդ, հասակիդ։ Մեծ տղա ես դարձել։ Հիմա քեզ տեսնում եմ բալաս, տեսնում եմ։

Ապա մի քանի անգամ համբուրեց նրան ու թաշկինակով սրբեց թաց աչքերը։

— Հայրիկն ու հորեղբայրները զբաղված էին կոլտնտեսությունում, տատն ինձ ուղարկեց։ Մեքենան դուրսը սպասում է, պապի՛...

Քիչ հետո Ասլան ամին, շորերը փոխած, կանգնած էր միջանցքում։ Նրան ճանապարհ դնելու եկան բժշկուհիները։ Եկավ նաև պրոֆեսորը։ Ասլան ամին մի քանի անգամ շնորհակալություն հայտնեց նրանց և առաջ անցավ։



Նա տեսավ պրոֆեսորի դեմքը:

— Ասլա՛ն ամի, չմոռանաս, երեք ամիս հետո արի, որ մյուս աչքդ էլ առողջացնենք,— ասաց պրոֆեսորը։

— Կգամ, անպատճառ կգամ, երկար կյանք եմ ցանկանում ձեզ,— պատասխանեց Ասլան ամին և Հարիրի ձեռքից բռնած հիվանդանոցից դուրս եկավ։

Շոֆերն էլ ուրախ-ուրախ ողջունեց Ասլան ամուն և նստեցրեց իր կողքը։ Իսկ գյուղից դուրս այնքան մարդ էր դիմավորում նրան, որ ծերունին չգիտեր որ մեկին գրկեր։ Այդտեղ էին և՛ կոլտնտեսության նախագահը, և՛ Սալմանը, և՛ իր կինը, և՛ թոռներն ու հարսները։ Կարծես թե տոն էր գյուղում այդ օրը...




# ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՃԱՄԲԱՐՈՒՄ

*Մ. ՇԱՂԳԱՄՅԱՆ*

Անտառը նոր էր արթնացել. բաց պատուհանից լսվում էր թռչունների դայլայլը: Ճամբարականները դեռ քնած էին վաղորդյան քնով: Ջեմման հանկարծ բացեց աչքերը. նրան թվաց, թե էջմիածնում է, իրենց տանը: Թվում էր, թե ուր որ է կլսվի մայրիկի ծանոթ ռտնաձայնը... Ջեմման սթափվեց, նայեց ընկերուհիներին, ապա՝ լուսամուտից դուրս: Արևը սարի կատարից տարածել էր իր պայծառ շողերը. քչքչում էր մոտակա գետակը. անտառից մեղմ զեփյուռ էր փչում:

— Ի՜նչ լավն է մեր ճամբարը, ինչքա՜ն գեղեցիկ,— շշնջաց բնության գեղեցկությամբ հմայված աղջիկը:

Իրոք, էջմիածնի կոլտնտեսությունը ճամբարի համար հիանալի անկյուն էր ընտրել. անտառներ, լեռներ, մարգագետիններ, գետակ, սառնորակ աղբյուրներ: Ահա այսպիսին է Ախտայի շրջանի Մարմարիկ գյուղը:

Ճամբարը տեղավորված է յոթնամյա դպրոցի շենքում: Երբ երեխաները առաջին անգամ այստեղ եկան, ննջարաններն ու ճաշասենյակներն անհարմար էին, դպրոցի բակը քարքարոտ էր, չկար սպորտային հրապարակ: Պիոներներն իսկույն կարգի բերեցին շենքը: Յուրաքանչյուր ջոկատ պիոներական տողանի համար բակում փոքրիկ քարերով սահմանագծեց իր տեղը: Երեխաները հրապարակ հիմնեցին, կանգնեցրին կայմը և նրա շուրջը աղյուսի մանրուքից աստղ պատրաստեցին:

Ճամբարը առանձնապես շքեղ էր բացման օրը: Մոտակա անտառներն ու մարգագետինները լիքն էին ծաղիկներով, և երեխաներն այնտեղից փնջեր էին բերում: Բերում էին ու թափում ճամբարի բակում:

— Ի՜նչ մեծն է այս կակաչը. ես երբեք այսպիսին չեմ տեսել,— կարմիր կակաչից պսակ հյուսելով ասում է Սիրանը:

Աղջիկների առաջ թափված էին սպիտակ երիցուկ, կապույտ տերեփուկ, դեղին ու մանուշակագույն անթառամ ծաղիկներ:

Ճամբարի բացումն է: Հյուրեր են եկել էջմիածնից, Երևանից, Հանքավանի ձորի ճամբարներից: Ահա ելույթ է ունենում Միկոյանի անվան Լենինի շքանշանակիր կոլտնտեսության վարչության նախագահ ընկեր Ն. Մարգարյանը:

— Սիրելի՛ երեխաներ. կոլտնտեսությունը ձեր ամառային հանգիստը լավ կազմակերպելու համար ամեն ինչ կանի: Ճամբարին մենք արդեն յոթանասուն հազար ռուբլի ենք հատկացրել: Դուք ապահովված կլինեք ամեն ինչով:

Ողջույնի խոսք է ասում նաև ճամբարի պետ Մ. Հարությունյանը: Հայաստանի Կոմերիտմիության Կենտկոմի ներկայացուցիչը ճամբարին նվերներ է տալիս: Պիոներները մեծ խանդավառությամբ ընդունում են շեփորը, դրոշը և վըզկապները:

Արևը թաքնվում է ամպերի տակ: Շրջապատը կամաց-կամաց մթնում է: Խարույկի հրեղեն լեզուները պատռում են մթության քողը: Վառվող փայտերի կայծերը թվում է, թե անհամար աստղեր դարձած երկինք են բարձրանում: Երեխաների գեղարվեստական ինքնագործունեությունը շարունակվում է մինչև ուշ երեկո:

Պիոներները որոշել են ուսումնասիրել հայրենի երկիրը: Ահա նրանք մագլցում են զառիվեր լեռը: Սահակը բեքվել է ժայռի վրա և ուշադրությամբ զննում է արևի տակ փայլփլող սպիտակ քարը:

— Կվարց է երևում, չէ՞,— ասում է Ցեղյան:

Այդ նույն պահին նրանց է մոտենում Սուրիկը և բաց անում քարերով լիքը պարկի բերանը:

— Շատ մի՛ զննիր, կտանենք ճամբար՝ կպարզենք,— քարը գցելով պարկը ասում է նա:

Մարմարիկի շրջակայքը հարուստ է քարերի, բույսերի, կենդանիների տեսակներով:

— Ախդա՛, սպա ականջ դիր, տես ի՜նչ խորհրդավոր ձայն է,— անտառ մտնելով ընկերուհու ականջին շշնջում է Վարդանը:

— Վախենալու ոչինչ էլ չկա, դրանք թռչուններն են, անտառի փոքրիկ բնակիչները:

Երեխաների աչքի առաջ ծաղկից ծաղիկ են թռչում գույնզգույն թիթեռները, մորեխները:

— Տե՛ս, ի՜նչ չքնաղ է, չեմ էլ կարող բռնել,— բաց թողնելով կարմրագույն թիթեռին, դժգոհում է Սերուժանը:

Սակայն նա չի հուսահատվում. հետապնդում է սիրուն թիթեռներին և որսում նրանցից մի քանիսը:



— Տո՜ւ, տո՜ւ-տո՜ւ,— անսպասելի հնչում է շեփորը:

Անտառի տարբեր ծայրերից դեպի բացատն են վազում երեխաները: Նրանցից մեկը սունկ է հավաքել, մյուսը՝ մորի, երրորդն իրեն զարդարել է ծաղիկներով: Բացատում զրույց է սկսվում «Վլադիմիր Իլյիչ Լենինի մանկությունն ու դպրոցական տարիները» թեմայով: Ավագ ջոկատավար Մարիետա Զիլինգարյանը պատմում է փոքրիկ Վոլոդյայի, Ուլյանովների համերաշխ ընտանիքի մասին: Պիոներներն անտառում զրույց են լսել նաև «Ինչպես է կռփվում կամքը» թեմայով, բարձրաձայն ընթերցանություններ են կազմակերպել: Ճամբարը հարուստ գրադարան ունի: Երեխաները բնության գեղեցիկ գրկում խորասուզվում են գրքերի աշխարհը, ապրում, ոգևորվում իրենց սիրած հերոսներով: Ցեղյան, Էմման, Արփիկը, Սահակն արդեն կարդացել են «Պատմվածք Զոյայի ու Շուրայի մասին», «Գյուղ Չեչեկը», «Բոռը», «Պատմվածքներ Իսպանիայի մասին» և այլ գրքեր:

Երեխաների սիրած վայրն է նաև գետափը: Ճամբարի մոտով հոսում է Մարմարիկը: Միսխանայի լեռների ձյունը հալվելով փոքրիկ գետակ է դառնում, ապա ճանապարհին լցվում է աղբյուրների ջրով և այսպես կազմվում է Մարմարիկ գետը և թափվում Հրազդանի մեջ: Ճամբարականները արդեն շերեփուկներ, տզրուկներ են բռնել, իսկ ձկնորսությունը նրանց ամենասիրելի գործն է:

Վանիկը կարթը ջուրն է գցել, բոլորը սրտատրոփ հետևում են:

— Քաշի՛ր, էլ ո՞ւմ ես սպասում,— բացականչում է մի անհամբեր տղա:

Վանիկը կամաց կարթը հանում է ջրից և ինչ.

— Բեղավո՛ր է,— բացականչում են երեխաներն ու շրջապատում ձկնորսին:

Չկան այսպիսի տեսակով հարուստ է Մարմարիկը: Գետում երեխաները լողանում էլ են:

— Ա՜յ թե լողորդներ են՝ Համլետը, Սերուժան,— ասում է Ախդան:

— Վա՜յ, Համլետի գլուխը չի երևում,— սարսափահար բացականչում է Էմման:

Նրա սարսափը ուրախության է փոխվում, երբ Համլետը գլխով ճեղքում է ջուրը և շարունակում անտարբեր լողալ: Բոլոր երեխաներն էլ սիրում են սպորտը: Ճամբարում կազմակերպված են աղջիկների ու տղաների վոլեյբոլի թիմեր: Վերջերս նրանք հանդիպում ունեցան գյուղի յոթնամյա դպրոցի վոլեյբոլիստների հետ և հաղթանակ տարան: Մի քանի օր առաջ պատանի սպորտսմենները ընկեր Ղազարյանի ղեկավարությամբ տուրիստական արշավ կազմակերպեցին: Նրանք բարձրացան դիմացի սարի գագաթը: Կոլտնտեսության ճամբարի երեխաները լավ բարեկամներ են Հանքավանի ձորի Պտղենային պարանքների ար-

դյունաբերության բանվորների, Սպանդարյանացիայի աշխատողների արհմիությունների նամարների պիոներների հետ: Բարեկամները միմյանց հանդիպելիս պատմում են իրենց հետաքրքիր գործերի մասին:

— Մենք երգի, պարի, թատերական, «հմուտ ձեռքեր» խմբակներ ունենք,— ոգևորությամբ ասում է Էմման:

Նա պատմում է, թե նամբարում պիոներներն ինչպես են աշխատում փոքրիկների հետ:

— Մենք նրանց սովորեցնում ենք, թե ինչպես պետք է հավաքել անկողինը, մաքրել սենյակը, շաշկի խաղալ,— ավելացնում է Սվետլանան:

Փոքրիկներն առանձնապես շատ են սիրում պատմվածքներ ու հեքիաթներ լսել: Ժաննետան, Աիդան, Սվետլանան շատ հեքիաթներ գիտեն և, բացի դրանից, կարողանում են պատմել մեծ ոգևորությամբ, իսկական արտիստի պես:

Թնության կախարդանքը մոռացության չի մատնել աշխատանքը, որը բոլոր բարիքների աղբյուրն է:

— Լինենք Մարմարիկում, թե էջմիածնում, դա միևնույն է, պետք է օգնել հայրենի բերքը հավաքելու գործին, դրուժինայի աշխատանքները պլանավորելիս առաջարկում է Անժիկը:

Մարմարիկի կոլտնտեսությունը եգիպտացորենի, հացահատիկային կուլտուրաների անծայրածիր դաշտեր ունի: Երեխաներն այժմ մշակում են եգիպտացորենի մոտակա դաշտը:

Կոլտնտեսության նամբարում աշխատանքները բազմազան են, հետաքրքիր: Այդ բոլորի մասին հնարավոր չի պատմել:

**ՄԵԶ ԳՐՈՒՄ ԵՆ**

## ԴՊՐՈՑԱՄԵՐՁ ՀՈՂԱՄԱՍՈՒՄ

Աշտարակի յոթնամյա դպրոցի պիոներական դրուժինային կոլտնտեսությունը տրամադրել էր 4000 քառակուսի մետր հողամաս:

Եվ ահա պատանի բնասերները բահ, քլունգ ու փոցխ առած գնացին հողամաս: Հողն անմշակ էր: Օգնության հասավ տրակտորը: Դրանից հետո պատանիներն սկսեցին իրենց գործը:

Բնագիտության դասատու Կարո Սարիբեկյանի նախաձեռնությամբ կազմվեց հողամասում մշակվելիք կուլտուրաների պլան-հատակագիծը: Հատակագծի մեջտեղը գծագրված էր ծաղկանոցօրացույցը, իսկ նրա շուրջը՝ զանազան մարգեր, լոբու թմբեր, վարունգի, կաղամբի, դդումի, ձմերուկի, սեխի հատվածները:

Հատուկ հողամաս կա եգիպտացորենի և նակրճդեղի համար: Դրանց մշակությունը կատարեցին յոթերորդ դասարանի աշակերտներ Ժուդեֆս Ճաննապանյանի և Սերյոժա Ադումյանի օղակները:

Օնիկ Ամիրյանը զբաղվել է վարունգի մշակությամբ:

— Մեր օղակները,— ասում են Սերյոժան և Ժուդեֆսը,— 200 քառակուսի մետր տարածության վրա ցանեցին մի կիլոգրամ եգիպտացորեն և պարարտացրին:

Գոհարի, Էլիչկայի, Ալյուտայի օղակները ավարտելով 600 մետր տարածության վրա լոբու և արևածաղկի ցանքը, իրենց օժանդակությունը առաջարկեցին եգիպտացորեն մշակող օղակներին: Դասատու Սարիբեկյանը կազմեց նաև մի մատյան, ուր գրանցվում էին օղակների ամենօրյա կատարած աշխատանքները, մասնակցողների թիվը և նշում էին լավագույն պիոներների ու առաջավոր օղակների անունները:

Շուտով պատանի բնասերները կհավաքեն իրենց աշխատանքի պտուղները:

*Ս. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ*

*(Աշտարակ, յոթնամյա դպրոց)*

# ՄԱՍՆԱԿՑՈՒՄ ԵՆՔ ԿՈՆԿՈՒՐՍԻՆ

— Եկեք ֆոտո-խմբակ կազմակերպենք,— ասաց մի օր մեր ընկերներից մեկը:

— Կազմակերպենք,— ասացինք բոլորս միասին:

Եվ այսպես, պիոներների ցանկությամբ հիմք դրվեց ֆոտո-սիրողների խմբակին: Հիմա խմբակում ընդգրկված են քսան պիոներ: Մենք ծանոթացել ենք լուսանկարչական գործին և նկարել սովորել:

Մեր խմբակն ունի իր լաբորատորիան, որտեղ մենք լաբորատոր աշխատանք ենք կատարում: Դավթյան Ռազմիկն ու Բաղդասարյան Ֆելիքսը հրաշալի են նկարում հատկապես բնության գեղեցիկ տեսարանները: Շուտով լինելու է լուսանկարների համաճամբարային կոնկուրս: Մեզանից ամեն մեկը ցանկանում է իր նկարներով առաջին տեղը գրավել: Ես նկարում եմ Ծաղկաձորի տեսարժան վայրերը: Առաջին օրերին իմ նկարները լավ չէին դուրս գալիս: Հետագա պարապմունքների ընթացքում պարզվեց, որ նկարելու ժամանակ մեծ արագություն էի տալիս: Խմբակի ղեկավարի օգնությամբ ես ուղղեցի իմ սխալը: Իսկ այժմ կարողանում եմ լավ նկարներ ստանալ: Նկարել եմ նաև մեր ճամբարի պիոներներին: Ես էլ եմ մասնակցելու կոնկուրսին:

Է. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

*(Տեղարդմիության պիոներական ճամբար)*

# ՈՒՐԱԽ Է ԱՆՑՆՈՒՄ ՕՐԸ

*Առավոտյան ժամը յոթին ճամբարի վրա տարածվում է շեփորի ձայնը: Բոլորս դուրս ենք գալիս վրաններից, ջոկատ առ ջոկատ շարվում և վազքով գնում ֆիզկուլտ հրապարակ: Ցուրտ է, բայց մենք լիցքային վարժություններին մասնակցում ենք թեթև հագնված: Նվագախմբի մեղմ հնչյունների տակ համաչափորեն վարժություն ենք կատարում...*

*Այդ օրը ամբողջ ճամբարով գնացինք մոտակա անտառը, որտեղ մեզ համար կազմակերպվեց երգերի, բանաստեղծությունների և խաղերի ուսուցում: Դրանք նվիրված էին Սովետական Միության օդային նավատորմի օրվան:*

*Հետո ջոկատում զրույց անցկացրեց ջոկատավար Ռիմա Ալոյանը: Նա պատմեց քաղաքացիական ավիացիայի նշանակության, հատկապես գյուղատնտեսության մեջ կատարած նրա դերի մասին:*

*Այդ օրը մենք շատ նոր բան սովորեցինք. իսկ երբ վերադարձանք ճամբար, տեղի ունեցավ դեղարվեստական երեկո, որը շատ ուրախ և բովանդակալից անցավ:*

*Երեկոյին ակտիվ կերպով մասնակցեցին առաջին, երկրորդ և երրորդ ջոկատները:*

Ջ. ՄԵԼԻՔՍԵԹՅԱՆ

(Կանազ գործարանի պիոներական ճամբար)

# ՄԵՐ ԲԱԿԻ ՃԱՄԲԱՐԸ

*Քաղաքային ճամբարի ստեղծման լուրը մեր բակում ցնծությամբ դիմավորվեց:*

*Երեխաները գործի անցան: Առաջին աշխատանքը դա ճամբարի խորհրդի համար տնակի կառուցումն էր: Անհրաժեշտ էր սեղաններ, աթոռներ, պլակատներ, նկարներ, ու զանազան խաղեր ունենալ: Այդ գործում մեծ օգնություն ցույց տվեց ծնողական խորհուրդը: Ձեռք բերվեց ձող դրոշի համար, կարմիր կտոր, ժապավեններ, թմբուկ, շեփոր:*

*Ճամբարը պատրաստ էր: Բացման օրը բոլորը իրարանցման մեջ էին: Չէ՞ որ առաջին անգամն էր, որ մեր բակի երեխաներն իրենց հանգիստը անցկացնելու էին հենց իրենց բակում, որտեղ գործելու էին երգի, պարի, ձեռագործի, վոլեյբոլի, ֆուտբոլի և այլ խմբակներ:*

*Երեկոն լավ էր նախապատրաստված: Կային հյուրեր հարևան ճամբարներից, ներկա էին նաև ծնողները:*

*Արդեն մթնել էր: Բոլորը անհամբեր սպասում էին, թե երբ պետք է բոցավառվի խարույկը... Նվագախումբը ազդարարում է խարույկի սկիզբը:*

*Սկսվում է Կիրովյան ռայոնի յոթերորդ ճամբարի ուրախ առօրյան: Որ ժամին էլ որ մտնեք ճամբար, երեխաներն զբաղված են մի որևէ գործով: Բոլորն աշխատում են, խաղում, ուրախանում: Եվ այսպես ամեն օր... Ճամբարի պետ Էմման այնքան հետաքրքիր նախաձեռնություններ է կազմակերպում, որ բոլորը*

դո՞ւ են մնում։ Իսկ նրան միշտ օգնում է ավագ ջոկատավար Զուլիխանը։ Նա և՛ երգում է, և՛ պարում, և՛ արտասանում։

Այստեղ այնքան լավ է, որ ճամբարի 120 պիոներներից ամեն մեկն ունի իր անելիքը։ Տղաների ֆուտբոլի խմբակը ղեկավարում է Վոլոդյա Սարաֆյանը։ Այդ ճարպիկ տղան բոլորին ներգրավում է խմբակի մեջ։ Ձեռագործի խմբակը ղեկավարում է Լուսյա Մկրտչյանը։ Լավ են աշխատում նաև թեթև ատլետիկայի և վոլեյբոլի խմբակները։

Կազմակերպել են էքսկուրսիաներ դեպի Արզնի, Սևանա լիճ, Խ. Աբովյանի անվան մանկական երկաթուղի։ Եղել են Հովհ. Թումանյանի տուն-թանգարանում և մի շարք այլ վայրերում։

Կ. ՄԿՐՏՉՅԱՆ

(բակի բնակիչ)

# ՀԵՏԱՔՐՔԻՐ ԷՔՍԿՈՒՐՍԻԱ

Մ. ՎՇՏՈՒՆԻ

Ֆոտո՝ ՆԵՄՐՈՒԹԻ

Մայրն իր աղջկա համար նոր զգեստ կարեց։

— Ի՞նչ գեղեցիկ է, մայրի՛կ, ո՞վ է գործում այս կտորը,— հարցրեց Անահիտը։

— Ուզո՞ւմ ես տեսնել, թե ով է գործում։

— Այո, ուզում եմ։

Հաջորդ օրը այդ բակի ճամբարի պիոներները պատրաստվում էին էքսկուրսիա գնալ Լենինի անվան մետաքսագործվածքեղենի ֆաբրիկան։ Անահիտի մայրն իմացավ այդ և հաճույքով միացավ նրանց։ Նրա հետ գնաց նաև Անահիտը։

Մեկ ժամ հետո ավտոբուսն ասֆալտապատ ճանապարհով սլանում էր դեպի Շահումյանի շրջան։ Կես ժամ չանցած նա կանգ առավ մի գեղեցիկ շենքի առաջ։

— Սա է Լենինի անվան մետաքսագործվածքեղենի ֆաբրիկան,— ասաց ճամբարի պետը։ Եվ երեխաներն իջան ավտոբուսից...

Ֆաբրիկայի միջանցքում պիոներներին դիմավորեց հին վարպետներից մեկը և ուղեկցեց դեպի նախապատրաստական ցեխը։ Նրանք մտան թել թրջելու բաժինը։ Այստեղ, մեծ-մեծ տաշտակների մեջ, թրջոց էին դրված թելերը։

— Մետաքսաթելի ֆաբրիկայից ստացված բնական թելից բացի, մենք տարբեր քաղաքներից ստանում ենք նաև արհեստական մետաքսաթել՝ վիսկոզա։ Եվ այդ բոլորը սկսում ենք մշակել այսպես,— խոսեց վարպետը։— Այս տաշտակների ջուրը պարունակում է օճառ, գլիցերին, բամբակի յուղ և այլ նյութեր։ Դա նրա համար է, որ թելերը լավ մաքրվեն։ Քառասուն աստիճան ջերմություն ունեցող այդ խառնուրդի մեջ թելերը մնում են կես ժամ, որից հետո դրվում են քամիչ մեքենայի մեջ։

Վարպետը երեխաներին ցույց տվեց քամիչ մեքենան։ Դա արտաքինից մի մեծ կաթսայի էր նման։ Վարպետը խնդրեց բաժնի վարիչին գործի



Դրոշմման ցեխում

գցել այն։ Բանվորներից մեկը միացրեց էլեկտրական լծակը, մեքենան սկսեց աղմկել և արագ-արագ պտտվել իր առանցքի շուրջը։

— Հոլից էլ արագ է պտտվում,— զարմացավ Ռուբիկը։

— Այս մեքենան շատ պարզ կառուցվածք ունի. աշխատում է կենտրոնախույս ուժով։ Ներսի կողմից առանցքին ամրացված է ցանցավոր մի մեծ գամբյուղ, որի մեջ դրվում են թելերը։ Առանցքը

պտտվում է և իր հետ պտտեցնում կաթսան ու թելերով լի զամբյուղը։ Օդի ճնշման տակ թելերը լրիվ քամվում են։

Դրանից հետո պիոներները մտան մի ընդարձակ աշխատասենյակ, որտեղ կանոնավոր շարքերով տեղադրված էին տարբեր տեսակի մեքենաներ։ Ամբողջ աշխատասրահը ողողված էր արևի պայծառ շողերով, որոնք ասես խաղում էին հազար գույնի ու երանգի նուրբ մետաքսաթելերի հետ։ Թելերը հոսում էին հանդարտ գետակների նման։ Մեքենաների մոտ կանգնած երիտասարդ բանվորուհիները աչալուրջ հսկում էին և մատների ճկուն շարժումներով ճիշտ ուղղություն տալիս հոսող թելերին։ Մի տեղ խճճված թելերն աստիճանաբար բացվելով փաթաթվում էին հաստ կոճերին, մի այլ տեղ հոսելով տարբեր ուղղություններով միանում էին ու դառնում մի թել։



Նկարիչները ստուգում են պատրաստի կտորեղենը

— Որպեսզի գործվածքը դիմացկուն լինի, թելին տալիս ենք երկու հազար երկու հարյուր ոլորք,— ասաց վարպետը և ցույց տվեց թել ոլորող մեքենան, որն անչափ հետաքրքրեց երեխաներին։

— Դա չի՞ խանգարում աշխատանքին,— հարցրեց Սամվելը.— ա՛յ, երբ ես հոլի համար թել եմ ոլորում, բավական է, որ մի ծայրը դուրս թռչի. այնպես է խճճվում, որ ջոկելը շատ դժվար է լինում։

— Իմ տատիկը խճճված թելը միշտ ինձ է տալիս ջոկելու,— ասաց Անահիտը։

Այդ խոսքերի վրա պիոներները ծիծաղեցին և զվարթ խմբով հետևեցին վարպետին։

Նրանք մտան գործվածքային ցեխ։ Մեքենաների վրայով հանդարտ հոսում էին ծիածանի պես գույնզգույն թելերը, դառնում նուրբ գործվածք։

Անցնելով շարքից շարք, վարպետը երեխաներին ծանոթացնում էր առաջավոր բանվորուհիների հետ։

— Սա անվանի բանվորուհի Նոյեմզար Պողոսյանն է։ Տեսնո՞ւմ եք, նա երկու մեքենա է աշխատեցնում. մեկով նուրբ մարկիզետ է գործում, մյուսով՝ զոլավոր քաթան։ Իսկ սա Արփիկ Մուրադյանն է, մյուսը՝ Մարիամ Կրպաշյանը, մեկը կրեպժորժետ է գործում, մյուսը՝ կրեպդեշին. երկուսն էլ իրենց առաջադրանքները կատարում են գերազանցորեն։

Անահիտը որոնող հայացքով իր շուրջն է դիտում, երբ հանկարծ դիմացի շարքում տեսավ մի բանվորուհու, որ իրեն ձեռքով էր անում։ Նրա մեքենային ամրացված էր մի փոքրիկ կարմիր դրոշակ։

— Մորաքո՛ւյրը, իմ մորաքո՛ւյրը,— ձայն տվեց Անահիտը։

— Այո, քո մորաքույրը մեր ամենաառաջավոր ջուլհակուհին է... Նա է գործում այս նուրբ քաթանը, որից կարած է քո հագուստը,— ասաց վարպետը, շոյելով Անահիտի մազերը։

Պիոներները ծանոթացան նաև ցեխի հերթափոխ վարպետ Դրաստամատ Ղազախեցյանի հետ։ Նա զբաղված էր մի մեքենայի մոտ, որը կանգ էր առել, իսկ անփորձ բանվորուհին դժվարանում էր հասկանալ խափանման պատճառը։

Այնուհետև վարպետ Անդրանիկը պիոներներին տարավ ներկատուն։ Հսկայական կաթսաների մեջ եփվում էր գործվածքը, մաքրվում կպչող նյութերից և հաջորդաբար լվացվելով, ներկվում էր, քամվում, չորացվում և ուղարկվում դրոշմելու բաժին։

Ճամբարականները ծանոթացան նաև նկարիչների աշխատանքներին, որոնք գործվածքի համար գեղեցիկ նախշեր էին նկարում։ Նկարիչներից մեկը ջրաշուշաններ էր նկարում, մյուսը՝ կարմիր վարդ, երրորդը՝ գեղեցիկ մի զարդանախշ։ Հարևան սենյակում բանվորներն այդ նախշերը կտորի վրա դրոշմելու համար ներկեր էին

եփում, իսկ դրոշմման բաժնում դրանք անցկացնում էին կտորների վրա։

— Ի՞նչ եք կարծում, երեխանե՛ր, այս կտորը հագուստի համար արդեն պատրա՞ստ է։

— Այո, իհարկե. էլ ի՞նչ է մնում անելու,— ասաց Լևոնը։

— Եթե այս կտորը վաճառքի հանենք, ոչ ոք չի գնի, որովհետև արևից շատ շուտ կգունատվի, իսկ լվանալիս ներկերը կթափվեն։ Որպեսզի գույները կտորի վրա ամրանան, անհրաժեշտ է՝ նախշած կտորը որոշ ժամանակ պահել տաք գոլորշու հինգ մթնոլորտային ճնշման տակ և ապա ուղարկել արդուկելու, իհարկե, ոչ թե ձեռքի սովորական արդուկներով, այլ մեքենայով։

Պատրաստի կտորեղենի բաժնում սեղանների վրա դրված էին հաստափոր ալբոմներ, որոնց մեջ ամփոփված էին ֆաբրիկայի բաց թողած կտորների բոլոր նմուշները։ Բանվորուհիները մետրերով չափում էին կտորը, ծալում ու վերածում կապոցների։ Պատերի վրայից կախ էին տված ֆաբրիկայի արտադրած կտորների տեսակները, որոնց գեղեցիկ տեսքը գրավեց երեխաներին։

— Սրանից մեծ մասն ուղարկում ենք Միության տարբեր քաղաքները։ Այս կտորն էլ հատկապես երեխաների համար է։

Ասես ամառ էր իջել, այնքա՜ն գրավիչ վարդանախշեր էին դրոշմված այդ նուրբ կտորի վրա։

Այդ օրը պիոներները շատ նորություններ իմացան։ Դա նրանց առաջին գործն էր, որ կատարեցին ամռանը։

# ԽԱՐՈՒՅԿԻ ՇՈՒՐՋԸ

Ռ. ՂԱՐԻԲՅԱՆ

Խաղաղ երկնքի գահը թողնելով,
Կտրելով անծայր իր կապույտ ուղին,
Բարձր լեռների հետևն անցնելով,
Հոգնած արևը մտավ անկողին...
Բայց թավ անտառի մթին բացատում,
Լուսավորելով և՛ ծառ, և՛ տերև,
Նույնքան գրավիչ, նույնքան լուսատու,
Ճառագեց ասես ուրիշ մի արև:
Ճամբարի հսկա խարույկն է բոսոր
Շողերով այդպես լցրել սար ու ձոր...

Մեծ երեկո է այսօր ճամբարում,
Ձիրքի, շնորհքի նոր ստուգատես.
Մեկը երգում է, մյուսը՝ պարում,
Մեկը ասմունքով գալիս ասպարեզ...
Փոխվում են թովիչ պատկերներն հերթով,
Ու շատ համարներ կրկնվում նորից.
Եվ ամեն մի նոր ելույթից հետո
Թնդում է անտառն ուժգին ծափերից:
Իսկ մի երկուսը, տեղից, անհամբեր,
Անվերջ պահանջում ու կանչում են դեռ.

— Համիկն ո՞ւր է, կանչեք թող գա,
Համիկը լավ է պարում:
Նրա նման պարող չկա
Մեր այս տարվա ճամբարում...
Ու ծփում է նվագն անուշ,
Սևանի պես կապուտակ,
Հնչյունների մեղմ ու քնքուշ
Նազանքի հետ ներդաշնակ,
Սարից իջնող հովի նման,
Հարհանդ-մարմանդ սահելով,
Կաքավում է աղջիկը այն
Հայացքը ցած պահելով...

— Դե ծափ տվեք, ի՞նչ եք տարվել,
Ճամբարում ենք գտնվում մենք,
Ա՛յ, թե ինչպես պետք է պարել,
Ա՛յ, թե ինչ լավ ուժեր ունենք:
Շատ բան կա դեռ սովորելու,
Պարծենալը թեև բան չի,
Բայց պատրաստ ենք միշտ դուրս գալու
Ով վաղը մեզ մրցման կանչի...

Խավար գիշերը զարկել է վրան,
Հովը անտառին ասում է օրոր,
Վերից շողում են աստղերն հուրհրան,
Հանգիստ քնել են արդեն սար ու ձոր:
Խարույկի բեկվող ցոլքերը դանդաղ
Ձուլվում են մթին, դալկանում, մարում,
Բայց դեռ լսվում է աղմուկ ու ծիծաղ,
Երգն ու նվագը դեռ չի դադարում...
Ելնում է տեղից շեփորահարը,
Նա էլ հիացած, հենց նոր էր հիշել,
Որ անխախտ մի կարգ ունի ճամբարը.
Քնելու ժամ է... դե, բարի գիշեր:

# ԿԱՆՑՆԵՆ ՕՐԵՐ

Կոլտնտեսության նախագահ Տիգրան Սարգըսյանն իրեն սպասող պիոներներին ու դպրոցականներին ընդունեց շատ սիրալիր։ Տեղացել էր սպասված անձրևը և դաշտերը թարմացել էին, կենդանացել։ Նախագահն էլ դրանից ավելի էր պայծառացել։

— Լսում եմ. ի՞նչ կա,— ասաց նա։

Առաջ եկավ իններորդ դասարանի գերազանցիկ աշակերտուհի, ջոկատավար Ցլորա Դանիելյանը և խոսեց.

— Ընկե՛ր Սարգսյան, մեր պիոներները որոշել են օգնել կոլտնտեսությանը։ Հերկած հողամաս որ հատկացնեք, ինքներս եգիպտացորեն կցանենք։ Արդեն ուսումնասիրել ենք մշակելու ձևը։ Ընկեր Շուշիկ Սեյրանյանն էլ խոստացել է օգնել, խորհուրդներ տալ։

Նախագահը գոհունակությամբ հարցրեց.

— Ինչքա՞ն հողամաս եք ուզում։

— Մի երեք հեկտար, էլի։

— Շատ չէ՞։

— Ո՛չ, քառասուն պիոներ են, կհասցնենք։

— Լավ. «Զորակոնակ» հողամասը հենց երեք հեկտար է և նախատեսված է եգիպտացորենի համար։ Գնացեք պահեստից սերմը ստացեք և վաղվանից անցեք գործի։



Պիոներները երկու օրում քառակուսի-բնային եղանակով ցանք կատարեցին։ Ուսուցիչներ Վոլոդյա Դավթյանը, Արմենակ Եսայանը և կոլտնտեսության գյուղատնտես Շուշիկ Սեյրանյանն էլ իրենց ցուցմունքներով օգնեցին նրանց։ Ցանքը կատարելուց հետո անձրև եկավ, հողն ավելի խոնավացավ։

Տաս օր անց պատանիները գնացին դիտելու իրենց աշխատանքի արդյունքը։ Դաշտը ծածկվել էր թարմ ծիլերով։ Պիոներների հրճվանքին չափ չկար։

— Եկեք այնպես անենք, որ բոլոր կոլտնտեսականները գոհ լինեն. այնպիսի փարթամ բույսեր աճեցնենք, որ ջոկվի բոլորից,— ասաց աշակերտուհի Գոհար Գրիգորյանը։

— Այդպես էլ կանենք,— ձայնեցին բոլորը։

Հիմա հիանալի աճել է եգիպտացորենը։ Բույսերը միմյանցից հավասար հեռավորություն ունեն, հավասար ուղղություններ։ Երկու ամիս առաջ յուրաքանչյուր բույս նապաստակի ականջների նման երկու թևեր էր միայն խլշած դուրս հանել հողից. իսկ հիմա արդեն մարդու ուսերին են հասնում։

Պիոներները եռանդով մշակում են եգիպտացորենի ցանքերը։ Ահա, նրանք հանում ու նետում են բոլոր մոլախոտերը, չեն թողնում, որ նորերն աճեն, փխրեցնում են հողը։

Մի օր էլ, երբ հորիզոնն ամպեց, ծերունիներն ասացին՝ «էն ամպում անձրև կա»։ Պիոներները առիթից օգտվելով անձրևաջրերը շրջեցին ցանքի կողմը, հոսանքի հետ գոմաղբ խառնեցին և այդ ձևով սնունդ տվին բույսերին։

Տեսնել էր պետք, թե հորդ անձրևի տակ պիոներները ջոկատավար Ցլորա Դանիելյանի ղեկավարությամբ, ինչպես էին աշխատում։ Ջրով հոսող անձրևաջրից անջատել էին մի մեծ վտակ և լանջի վրա բացած առվով հասցրել ցանքին։ Թեև անձրևն էլ բավական էր, բայց նրանք լավ էին ուսումնասիրել իրենց հողի կազմությունը։ Նրանք գիտեին, որ անձրևը միայն վերին շերտը կթրջի, իսկ իրենք ուզում են, որ հողում շատ խոնավություն կուտակվի, գոմաղբահյութը, ներծծվող ջրերի հետ բույսերի խոր արմատներին հասնի։

Շուտով դադարեց անձրևը։ Ջրով հոխորտալով հոսում էր հեղեղը։ Ամպերը հեռացան և փայլեց արևը։ Պիոներները շորերը մինչև ծնկները վեր քաշած, փայլող բահերով գոմաղբախառն ջուրը այս բույսից հասցնում էին այն բույսին։

Սնուցվելուց մեկ-երկու օր հետո եգիպտացորենի բույսերն այնպես էին փարթամացել, մուգ կանաչ դարձել, որ հիանալ կարելի էր։

Ահա ինչու կոլտնտեսականները այդ ցանքերին նայելիս տարուբերում են իրենց գլուխները և ասում.

— Չէ՛, նրանց մշակածն ավելի լավն է։

— Էլ ինչո՞ւ են ֆերմայի գոմերի առաջ կուտակված աղբի դեղերը մնում կորչում. բերենք ու ջրի մեջ շաղ տանք, շրջենք ցանքերի վրա։

Պիոներները մեծ սիրով շարունակում են բույսերի մշակությունը։ Կանցնեն օրեր և նրանք կըտեսնեն իրենց աշխատանքի արդյունքը։

Գ. ԱՐԵՎՅԱՆ

(Ղափան, Արծվանիկ գյուղ)

# ԱՆՄԱՀՈՒԹՅԱՆ ՀՈՒՇԱՐՁԱՆԸ

Հայ ժողովրդի հարազատ զավակ, Լենինյան Կոմերիտմիության պանծալի սան Հունան Ավետիսյանը անմահ փառքով պսակեց իրեն: 1943 թվականի սեպտեմբերի տասնվեցին, Վերխնե Բականսկի ավանի մոտ գտնվող Դոլգայա բարձունքի վրա ֆաշիստական զավթիչների դեմ մղվող մարտում նա ընկավ հերոսի մահով: Նա իր կրծքով փակեց թշնամու հրակնատը և ապահովեց բարձունքի գրավումը: Սովետական զորամասերը սրընթաց հարձակումով ազատագրեցին բարձունքի շրջակա ավանները և ապա Նովոռոսիյսկ քաղաքը...



Հայրենական պատերազմից հետո բանվորական ավանի բնակիչները վերականգնեցին իրենց ավերված տները, դպրոցը, մանկապարտեզը, հիվանդանոցը, ցեմենտի գործարանը: Բայց նրանք երբեք չէին մոռանում իրենց խաղաղ ու երջանիկ կյանքի համար զոհված հերոսներին: Եվ ռուս մարդիկ Դոլգայա բարձունքի վրա, բանվորական ավանի կանաչավետ պուրակում, զոհված հայ մարտիկներին գրանիտե հուշարձան կանգնեցրին:

Շիրմաքարի վրայի պատվանդանին՝ սովետական մարտիկի արձանն է: Նա աջ ձեռքում սեղմել է ավտոմատը, ձախում՝ սաղավարտը: Նա խոնարհել է գլուխը և ծունկի եկել՝ լցված խոր հարգանքով դեպի զոհվածների հիշատակը:

Շիրմաքարին ամրացված սև մարմարյա տախտակին ոսկեհուռ տառերով գրված են հերոսի և նրա ընկերների անունները, իսկ պատվանդանին՝ ընկած քաջերին փառաբանող խոսքեր...

Հունիսի քսանհինգն է: Արևի պայծառ շողերը առատորեն ողողել են բանվորական ավանի գեղեցիկ պուրակը: Ահա գրանիտյա հուշարձանին են մոտենում բանվորների, ծառայողների, զինվորների ու նավաստիների խմբեր: Նրանք պսակներ են բերում: Սև մարմարով երեսպատված շիրմաքարի շուրջը զգաստ կանգնել են պիոներները:

Բանվորական ավանի պուրակում սկսվում է Սովետական Միության Հերոս Հունան Ավետիսյանի և նրա վեց մարտական ընկերների հուշարձանի բացմանը նվիրված միտինգը: Ներկա են նաև Սովետական Հայաստանից եկած դելեգացիայի անդամները, հերոսի հարազատները:

Մեկը մյուսի հետևից ելույթներ են ունենում բանվորական ավանի, Նովոռոսիյսկի աշխատավորության ներկայացուցիչները: Կարճ է նրանց խոսքը, բայց շատ ջերմ է և հուզիչ...

Դրանից հետո եղբայրական գերեզմանի վրա դրվում են բազմաթիվ պսակներ ու ծաղկեփնջեր: Ծաղկեփնջեր են դնում նաև պիոներները: Ապա նրանք պատվի են առնում:

— Հավերժ փառք մեր Հայրենիքի ազատության և անկախության համար զոհված հերոսներին,— հնչում է պիոներների ձայնը: Ապա նրանք շրջապատում են հերոսի մորը: Նրանք ավանի միջնակարգ դպրոցի Հունան Ավետիսյանի անվան դրուժինայի պիոներներն են: Վերցրել են հուշարձանի խնամքի շեֆությունը, դպրոցի դրուժինան էլ այդտեղ հավաքույթներ է կազմակերպում:

«Անմահության հուշարձան», այսպես են կոչում ավանում և այդպես էլ կմնա սոցիալիստական հայրենիքին անձնազոհ նվիրվածության այդ խորհրդանիշը:

*Մ. ԹՈՒԹԽԱԼՅԱՆ*

Տաս տարի առաջ էր, օգոստոսի տասնհինգին։ Ցնծում էին Կորեայի քաղաքներն ու գյուղերը, ցնծում էր ամբողջ կորեական ժողովուրդը։ Սովետական հզոր Բանակը ճապոնական զավթիչների լծից ազատագրել էր Կորեան։ Երեսունհինգ տարի շարունակ նա կրել էր այդ անտանելի լուծը, ապրել ստրկալի կյանքով։

Այսպես սկսվեց նոր կյանքի կառուցումը Երեսունութերորդ զուգահեռականից հյուսիս։ Դարերով ճնշված աշխատավորները դարձան երկրի տերերը։ Նրանք ստեղծեցին իրենց ժողովրդական իշխանությունը։

Այդ ժամանակ Կորեայի հարավում ափ դուրս եկան օտարերկրյա իմպերիալիստների զորքերը և սկսեցին տիրություն անել այնտեղ։ Նրանք չլսեցին ժողովրդի ձայնը, որը ձգտում էր միավորվել մի միասնական, ազատ ու անկախ պետության մեջ։ Իմպերիալիստները և կորեական ժողովրդի դավաճանները հրահրեցին քաղաքացիական պատերազմի հրդեհը Կորեայում։ Նրանք սկսեցին անխնա ավերել խաղաղ գյուղերն ու քաղաքները, բնաջնջել ծերերին, երեխաներին ու կանանց։ Բայց դահիճները չկարողացան ընկճել հերոս ժողովրդի պայքարող ոգին։ Համախմբված Աշխատանքային պարտիայի և պանծալի ղեկավար Կիմ Իր Սենի շուրջը ժողովուրդն անխնա հարվածում էր թշնամիներին։ Ազնիվ պայքարում նրան եղբայրական օգնության ձեռք մեկնեցին չինական խիզախ կամավորները։ Ամբողջ աշխարհի հասարակ մարդկանց համակրանքը կորեական ժողովրդի կողմն էր։

1953 թվականին Կորեայում դադարեց կրակը։ Լռեց պատերազմի ահեղ որոտը, մարեց հրդեհը։ Ժողովուրդը սկսեց բուժել երկրին հասցված վերքերը։ Սովետական Միությունը մեկ միլիարդ ռուբլի տրամադրեց Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկային։ Դա մեր ժողովրդի օգնությունն էր։ Հիմա երկրի քաղաքներն ու գյուղերը շինարարական փայտամածների մեջ են։ Կառուցվում են նոր գործարաններ, բնակելի շենքեր, թատրոններ հիվանդանոցներ, դպրոցներ։ Նորից ծաղկում են Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկայի դաշտերը։ Հնչում է խաղաղության երգը։ Ժողովուրդը նորից պայքարում է ամբողջ Կորեան միավորելու համար։ Ժողովրդի կամքը կհաղթի։

# ԵՐԿՈՒ ԵՂԲԱՅՐ

(Կորեական ժողովրդական հեքիաթ)

Նկ. Մ. ՏԻՐԱՏՈՒՐՅԱՆԻ

*Մի գյուղացի ուներ երկու տղա։ Տղաները մեծանում էին, իսկ ինքն ու կինը՝ ծերանում։ Երբ ավագ որդի Զան Մոնը դարձավ քսան տարեկան, ամուսնացավ։ Բայց ինչպես ընդունված է, ավագ որդին չհեռացավ իր ծերացած ծնողներից. ապրեց նրանց հետ, որպեսզի ծերության օրոք հայրն ու մայրը ոչ մի կարիք չունենան։*

*Շուտով ամուսնացավ նաև կրտսեր եղբայրը։ Նրա անունը Զան Սու էր։ Նա բնակվեց գյուղի մյուս ծայրին ու սկսեց զբաղվել իր տնտեսությամբ։ Ծանր էր նրա կյանքը։ Մի կերպ մի ֆանզա շինեց, բայց ինչո՞վ պիտի հերկեր հողը։ Ձեռք բերեց մի գութան, բայց փող չուներ, որ եզ գներ։ Եզը ձեռք բերեց, հետո էլ փող չուներ կալվածատիրոջը վճարելու հողի համար։ Հետո էլ սկսեցին երեխաներ ծնվել։*

*Զան Սուն աշխատասեր մարդ էր։ Առավոտյան բոլոր հարևաններից առաջ էր գնում դաշտ աշխատելու, երեկոյան ամենից ուշ էր տուն վերադառնում։*

*Հեշտ չէր կրտսեր եղբոր կյանքը. բայց ավագն էլ էր դժվարությամբ ապրում։ Չէ՞ որ նա պիտի պահեր ոչ միայն իր կնոջն ու երեխաներին, այլև չպետք է մոռանար ծերացած ծնողներին։*

*Եվ թեպետ եղբայրներն ապրում էին կիսաքաղց, շատ հոգսեր ունեին, բայց համերաշխ էին ու սիրով։*

*Մի անգամ աշնանը Զան Մոն հաշվեց բրնձի իր պաշարն ու մտածեց. «իմ բրինձը շատ չէ, ընդամենը՝ տասը պարկ։ Բայց չէ՞ որ իմ կրտսեր եղբոր բերքը ավելի քիչ է եղել։ Պետք է նրան օգնել, բայց այնպես, որ չիմանա»։*

*Եվ երբ մթնեց, Զան Մոն բրնձի մի ամենալիքը պարկ շալակեց ու տարավ կրտսեր եղբոր տունը։ Ճամփին նա հանդիպեց մի մարդու, բայց խավարում չճանաչեց նրան։*

*Ջան Մոն պարկը բերեց եղբոր տունը, դրեց գետնին և շտապ վերադարձավ։ Նա վճռել էր մի պարկ էլ տանել։ Վերադարձավ տուն, բայց ոչինչ չի կարողանում հասկանալ. ինչպես եղել է տասը պարկ, այնպես էլ մնացել է, չի պակասել։*

*Նա ժամանակ չուներ մտածելու։ Մի պարկ էլ շալակեց ու տարավ եղբոր տունը։*



— Այդ ո՞ւր ես գնում այդքան ուշ...

*Վերադառնալիս նա նորից տեսավ մի մարդու, բայց դարձյալ խավարում չճանաչեց։*

*Ջան Մոն վերադարձավ տուն՝ զարմանալի բան. տասը պարկ եղել էր, տասն էլ մնացել։ Այ քեզ հրա՜շք։*

*— Եթե այդպես է,— վճռեց Ջան Մոն,— երկու պարկ էլ տանեմ եղբորս։*

*Եվ նա նորից ծանոթ ճամփով գնաց գյուղի մյուս ծայրը։ Այդ ժամանակ ծագել էր լուսինը և լուսավորել ճամփան։ Բեռը նրա համար դարձավ թեթև, ինչպես ցերեկը։*

*Հազիվ էր Ջան Մոն անցել ճամփի կեսը, երբ տեսավ, որ դիմացից մի մարդ է գալիս և նույնպիսի մի պարկ կա նրա շալակին։ Իսկ երբ մարդը մոտեցավ, Ջան Մոն ճանաչեց իր կրտսեր եղբորը։*

*— Այդ ո՞ւր ես գնում այդքան ուշ,— հարցրեց Ջան Մոն։*

*— Իսկ դո՞ւք ուր եք գնում այս ժամին,— հարցրեց Ջան Սուն։*

*Երկու եղբայրները միանգամից հասկացան ամեն ինչ և ուրախ ծիծաղեցին։*

*Բանից դուրս եկավ, որ Ջան Սուն էլ էր այս երեկո վճռել օգնել իր եղբորը և նրա հետ բաժանել բերքը։ Նրանք միաժամանակ էին սկսել մեկը մյուսին բրնձի պարկեր տանել։*

*Ահա թե ինչու Ջան Մոյի բրնձի պարկերը չէին պակասում։*

*Եղբայրները ուրախ գրկախառնվեցին։ Բրնձի պարկերը ծանր էին, բայց թեթև էր եղբայրների հոգին։ Դե, իհարկե։ Չէ՞ որ եղբայրական սերն ու մտերմությունը թեթևացնում են ամեն մի ծանրություն։*

Ռուս. թարգմ. Գր. ԱՐԵՅԱՆ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՂԱԶԱԽՍՏԱՆ

1920 թվականի օգոստոսին Վ. Ի. Լենինը և Մ. Ի. Կալինինը ստորագրեցին Ղազախստանի Սովետական Սոցիալիստական Ավտոնոմ Ռեսպուբլիկա ստեղծելու մասին դեկրետը:

Այդ լուրը կայծակի արագությամբ տարածվեց լայնատարած Ղազախստանի տափաստաններում:

— Լե՛նին, հո՛ղ, ազատությո՛ւն...

Դարերով ճնշված, դարերով հող երազող, ճնշումից կռացած ղազախի համար շողաց լենինյան ազատաբեր արևը:

«Լենինի մարդիկ մեր մեծ եղբայրներն են», այսպես էին անվանում ղազախները ռուս մարդկանց: Նրանք եկան Մոսկվայից և Լենինգրադից: Նրանց հետ եկան նաև մեքենաներ, հզոր արդյունաբերական կենտրոններ կառուցելու նախագծեր:

Առաջին անգամ ղազախական հողում հնչեց տրակտորը:

Ժողովրդի երգիչ Ջամբուլը գտավ իր երգերում գովերգած հեքիաթային երկիրը: Դրանից հետո նա երգեց կոլտնտեսական գյուղացու, ղազախ բանվորի ազնիվ աշխատանքը: Իսկ այդ աշխատանքը իրոք որ հեքիաթային արագությամբ փոխում էր երկիրը: Դարերով անջուր, արևի տաքությունից ճաքած հողն ագահորեն ծծում էր ջրանցքներով հոսող ջուրը: Ծաղկում էր երկիրը, կանաչում, իսկ քաղաքներում գործարանների ու ֆաբրիկաների ծխնելույզների անտառն էր բարձրանում: Երեխաները վազում էին դպրոց, երիտասարդները խորանում գիտության մեջ: Լիաթոք, ազատ երգն էր

հնչում ամենուրեք, ժողովուրդն իր ազատ կյանքի ու ազնիվ աշխատանքի փառքն էր երգում։

1941 թվական... Մեր սիրելի Հայրենիքի վրա մութ ամպեր էին կուտակվում։ Հիտլերյան ավազակախմբերը գազազած հարձակվեցին սովետական երկրի վրա։ Հնչեց պարտիայի կոչը՝ «Պաշտպանել Հայրենիքը»։

Եղբայրական ժողովուրդների շարքում հերոսաբար կռվեց նաև ղազախ ժողովուրդը։

Թշնամու դեմ տարված հաղթանակից հետո սովետական մարդիկ նորից ձեռնամուխ եղան խաղաղ, ստեղծագործ աշխատանքի։

Պարտիան կոչ արեց. «Սկսել գոհիր խոպանի վրա»։

Ղազախական երկրում անծայրածիր են տափաստանները։ Այստեղ հողը դարերով խոպան էր մնացել, տափաստանում դարերով տիրապետում էր անում քամին։ Բայց ահա սկսվեց ժողովրդի գրոհը խոպանի վրա։ Հռնդացին տրակտորները, հազարավոր խոփեր ճեղքեցին տափաստանի կուրծքը։ Սովետական բոլոր ժողովուրդների զավակները պայքարի դուրս եկան ղազախական հողում՝ առատության համար։ Եվ տափաստանը բացեց իր գանձարանը։ Ցորենը լեռնացավ, հացը գնաց արևելք, արևմուտք, հյուսիս ու հարավ։

Երջանիկ է ապրում այժմ ղազախ ժողովուրդը։

Տպագրում ենք ղազախ գրող Բ. Սափարգալիի պատմվածքը։

# ՀԻՆԳ ԲԱՏԻՐ

ԲԵՆԳԱԼԻՆ ՍԱՓԱՐԳԱԼԻ

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

*«Քոքթարակ» կոլտնտեսության հիմնադրման օրից ծեր Ռահիմը ֆերմայի կովերն է արածացնում։ Լավ նախրապան լինելուց բացի, նա հայտնի է նաև որպես հետաքրքիր հեքիաթներ պատմող։ Երեխաները շարունակ նրա մոտ են վազում, լսում անվերջանալի պատմությունները։*

*Ահա թե նա ինչ պատմեց մի անգամ.*

*— Այն ժամանակ մեր տունը իշխան էր. սայլապանները մեզ մոտ էին գիշերում։ Մի օր էլ մի խումբ սայլապաններ եկան։ Նրանցից մեկը ռուս էր, անունը Սեմրեյ։ Հայրս ու նա վաղեմի ծանոթներ էին ու մենք Սեմրեյին խնդրեցինք, որ հեքիաթ պատմի։*



Ահա թե նա ինչ պատմեց...

*— Ի՞նչ պատմեմ, տեսա՞ծս, թե՞ լսածս,— հարցրեց նա։*

*— Տեսածդ, տեսածդ,— խնդրեցինք մենք։*

*— Լավ,— ասաց,— տեսածս կպատմեմ։— Եվ սկսեց.*

*— Ես դեռ փոքր էի։ Մի օր հայրս ու ես գնացինք Վոլգա գետի ափը ձուկ որսալու։ Եղեգնից տաղավար շինեցինք, բայց նոր էինք մի կերպ տեղավորվել, նոր էինք սկսել ձուկ որսալ, երբ գետը վարարեց, ջուրը բարձրացավ, շրջակայքը ողողեց և մեր տաղավարը քշեց-տարավ։ Մեզ հաջողվեց հոսանքի հետ տարվող մի նավակ բռնել և մեջը նստել։ Հեղեղն ուժեղ թափով մեզ քշեց հոսանքն ի վար։ Մեր նավակի հետ լողում էր մի կտոր սառույց, որի եզրին արմատահան եղած մի մատղաշ բարդի կար ընկած։ Հեղեղը վերջ չուներ, և հոսանքը մեզ տանում էր ու տանում։*

*Մի ամբողջ օր, գիշեր ու ցերեկ, ալիքների դեմ կռվելով մի կերպ կարողացանք նավակի քիթը խրել ափի մեջ, այդտեղից էլ ցամաք դուրս եկանք։ Մոտակա փոքր աուլում բարի մարդիկ մեզ ապաստան տվին, կերակրեցին։ Մենք հանգստացանք խրճիթում, իսկ հետո վերադարձանք այնտեղ, ուր թողել էինք մեր նավակը։ Բայց նավակը չկար. պոկվել ու հոսանքի հետ գնացել էր։ Դրա փոխարեն տեսանք այն սառցաբեկորը, որի վրա ընկած էր մատղաշ բարդին։ Ես բարդին ափ հանեցի։ Ծառը բոլորովին թարմ էր ու վրան նոր ծիլեր կային։ Քարափի եզրին մի հարմար տեղ ընտրեցի, բարդին տնկեցի և շուրջը փոս փորեցի, որ անասունները մոտ չգան։*

*Ես ու հայրս դատարկաձեռն ճանապարհ ընկանք։ Հասանք մի մեծ քաղաք՝ Սամարա, որտեղ*

մի հարուստի մոտ բանվոր վարձվեցինք։ Այդ հարուստը շրջիկ վաճառական էր և շատ ձիեր ուներ։

Մի քանի տարի հետո հայրս մեռավ, իսկ ես շարունակեցի աշխատել։ Մի օր տանտերս ինձ էլ տարավ հետը՝ ապրանք ծախելու։ Ես սայլապան էի։ Տեղը հեռու էր, և մենք երկար ճանապարհ անցանք։ Մի օր գիշերեցինք ինչ-որ փոքր աուլում։ Վաղ առավոտյան, երբ դուրս եկա, մոտերքում ճյուղառատ, հսկա ու հաստաբուն մի բարդի տեսա, և աուլի շրջակայքն ինձ թվաց ծանոթ։ Վերադարձա խրճիթ ու հիշեցի, որ դա հենց այն աուլն էր, ուր հեղեղը քշեց ինձ ու հորս, իսկ մենավոր բարդին հենց այն փոքրիկ ծառն էր, որ ես էի տնկել։ Մոտեցա, շուրջը ման եկա, նայեցի և նույնիսկ ձեռքով շոշափեցի։ Իմ ուրախությանը չափ ու սահման չկար»։

Ահա, երեխանե՛ր, այսպես վերջացրեց իմ հոր բարեկամ սայլապան Մեսրեյը։ Իսկ այս բարդին այն փոքրիկ ծառն է, որ Մեսրեյը տնկել էր այստեղ, մեր աուլն էլ այն աուլն է, որտեղ շատ տարիներ առաջ նա իջևանել էր։

Մարդը երջանկությունն էլ, հարստությունն էլ կարող է ձեռք բերել աշխատանքով։ Մեսրեյի աշխատանքի այս արդյունքը նրա համար դարձել է հուշարձան,— ասաց ծերունին, ապա փոքր ինչ մտազբաղ նստելուց հետո, ավելացրեց.

— Իմ պատմության վերջը դեռ առջևումն է, երեխանե՛ր։

— Դե՛, պատմիր, պապի՛,—խնդրեց Բոլաթը։

— Պապի՛, պատմիր,— աղերսագին խնդրում էին Երբոլը, Դոսայն ու Բեկեյը։

Ծերունին հազաց ու նորից սկսեց.

— Այդ Մեսրեյը շատ երեխաներ ուներ։ Աշխատանքի իսկական երջանկությունն էլ հենց այդ երեխաներն են տեսել։ Ես լսել եմ, որ նրա բոլոր երեխաները գիտնականներ են դարձել։ Մեկը ջրային գործն է սովորել, մյուսը՝ հողային, երրորդը, չորրորդը՝ զանազան մեքենաներ ստեղծելու գործը։ Նա ուներ նաև մի աղջիկ, որը, ասում են, տիրապետել է երկինքն ուսումնասիրելու գործին և աստղերի հետ է խոսում։ Ահա, նրա երեխաները, աշխատելով գիտության ասպարեզում, մեկը մյուսից առաջ անցել, վարպետության մասին իրար հետ վիճում են։

— Ես գետը որ ուղղությամբ ուզեմ՝ կթեքեմ,— ասում է ամենամեծը։

— Ես երկրի երեսին կարող եմ աճեցնել ամեն մի բույս, կարող եմ ավազոտ տափաստանը վերածել ծաղկած հովտի,— ասում է մյուսը։



... նույնիսկ ձեռքով շոշափեցի...

— Ես կարող եմ ուզածս տեղում խիտ անտառներ ստեղծել,— ասում է երրորդը։

— Ես կարող եմ այնպիսի մեքենա պատրաստել, որ կարողանա ինքնիրեն շարժվել և հազար մարդու աշխատանք կատարել,— ասում է հետևյալը։ Այդ ժամանակ նրանց քույրը քմծիծաղ է տալիս.

— Իմ վարպետության դեմ ձեր մասին խոսել էլ չարժե։ Ես կարող եմ ջրից կրակ հանել, հողից մետաքս հյուսել։

Մեսրեյի բոլոր երեխաներն էլ գնացին մեծ կառուցումների վայրը և ամեն մեկն սկսեց իր աշխատանքը։ Առաջին հերթին ծանրությունն ընկավ այն որդու վրա, որ սովորել էր մեքենաներ ստեղծելու վարպետությունը։

Մոտ ժամանակներս նրանք բոլորն էլ մեր աու-

լում էին. այստեղից էլ գնացին իրենց տեղերը։ Ես տեսել եմ Մետրեյի որդու հնարած մեքենան։ Դա մի ամբողջ ճանապարհը վեց քայլով է անցնում։ Երկաթե ահագին ատամներով փոքր բլուրը միանգամից շուռ է տալիս։ Այդ մեքենայով հիմա նրանք նոր գետի հուն են փորում... Ես ինքս եմ գնացել այնտեղ և խոսել Մետրեյի որդիների հետ։ Նրանց ասացի, որ մեր ապրած տեղում թե ջուրն է սակավ, թե անտառ չկա և թե հացաբույսերը լավ չեն աճում։ Նրանք ինձ ասացին։

— Մի՛ շտապեք, պապի՛։ Գետը մենք ձեր աուլի միջով կտանենք։ Այնտեղ, որտեղ ձեր աուլն է, մի մեծ լիճ կստեղծենք։ Շրջապատի բոլոր բլուրներն ու հովիտները կծածկվեն անտառով։ Իսկ ձեր աուլի մոտ, քարափին, նավահանգիստ կկառուցենք։ Նավ կնստեք, կգնաք Մոսկվա։

Երբ ծերունին ավարտեց իր պատմությունը, լուռ նստած երեխաները աչքերը ծերունուց չհեռացնելով, միաբերան ասացին.

— Այո, մեր պապը իրական կյանքից պատմեց։ Լավ կլինի։ Այ, այնտեղ կանգ կառնեն մեր նավերը. նավ կնստենք,— աղաղակեցին երեխաները, տեղից վեր թռչելով։

— Պապի, երբ որ դու նավով Մոսկվա գնաս, ինձ էլ հետդ կտանե՞ս,— հարցրեց Բուլաթը։

— Այո, երբ Մոսկվա գնալու լինեմ, քեզ էլ հետս կտանեմ,— պատասխանեց պապը։

— Մենք էլ կգնանք, աղաղակեցին մյուս երեխաները։

Թարգմ. Գ. ՀԱԿՈԲՅԱՆ

# ԱՐՏԱԿԱՐԳ ԴԵՍՊԱՆԸ

Բ. ԼԱՍԿԻՆ

Նկ. Տ. ՊՈԿՐՈՎՍԿԱՅԱՅԻ

1937 թվականի գարնանն էր, երբ Կենտրոնական Արկտիկայի սառույցների վրա առաջին անգամ փողփողաց կարմիր դրոշը։ Դա «Հյուսիսային բևեռ» սովետական գիտական դրեյֆող կայանի դրոշն էր։

Այդ ժամանակվանից էլ սկսվեց բևեռային շրջանի ուսումնասիրությունը։ Այդտեղ, «սառցային լռության» երկրում, սառցե հսկայական դաշտերի վրա, ավելի քան մի տարի առաջ երևացին երկու փոքրիկ նոր քաղաքներ։ Դրանք «Հյուսիսային բևեռ-3» և «Հյուսիսային բևեռ-4» դրեյֆող գիտական կայաններն էին։

Այս տարվա գարնանը Հյուսիսային Սառուցյալ օվկիանոսի վրայով թռչող սովետական ինքնաթիռի խցիկից երկու մարդ ուշիուշով դիտում էին անծայրածիր տարածությունները։ Արդեն մի քանի ժամ էր, ինչ բևեռային փորձված օդաչու Մասլեննիկովը և նոր ստեղծվող «Հյուսիսային բևեռ-5» դրեյֆող գիտական կայանի պետ աշխարհագրական գիտությունների թեկնածու Վոլկովը կայանի համար տեղ էին փնտրում։ Վերջապես ինքնաթիռը վայրէջք կատարեց։ Նոր գիտական կայանի համար համապատասխան սառցադաշտ գտնված էր։ Այդտեղ իր գիտական կյանքն սկսեց «Հյուսիսային բևեռ-5» դրեյֆող կայանը։

Հիմա Արկտիկայում այդ նոր կայանի հետ միասին իր աշխատանքներն է շարունակում «Հյուսիսային բևեռ-4» կայանը նոր անձնակազմով։

Արդեն մի շաբաթից ավելի էր, ինչ Բերեժկովը գտնվում էր «Մեծ հողի» վրա։ Մայրաքաղաքում անցկացրած օրերն անցան մի ժամվա պես։ Բոլոր հանձնարարությունների մեջ, որ տվել էին իրեն ընկերները, շատ կարևոր և պարտադիր մի հանձնարարություն կար. գնալ «Սովետական բևեռախույզ» մանկապարտեզը և հետաքրքրվել երեխաների կյանքով։ Այդ մասին նրան խնդրել էին և՛ էքսպեդիցիայի պետ Ռիաժենցևը, և՛ օդերևութաբան Պոցելույկոն, և՛ բժիշկ Մատվեևը, և՛ աստղաբաշխ-մագնիտոլոգ Գարմաշը։ Բոլոր այդ մարդիկ ապրում և աշխատում էին դրեյֆող գիտական կայաններից մեկում, իսկ նրանց երեխաները շոգ ամառը հանգստանում էին Մոսկվայից քառասուն կիլոմետր հեռու գտնվող, սոճու անտառում տեղավորված մանկապարտեզում։

Ճանապարհից դուրս տարածվել էր մերձմոսկովյան ծանոթ պեյզաժը՝ կեչիների պուրակներ, բազմապիսի ամառանոցներ, բանջարանոցներ... Բերեժկովը նայեց իր ուղևորին։ Շոգը նեղել էր արջուկին։ Դատարկելով շիշը նա տխուր-տրտում տմբտմբացնում էր գլուխը և կամացուկ փնթփնթում։

— Ինչ է, դո՞ւ չե՞ս...— ժպտաց Բերեժկովը,— միայն՝ առանց աղմուկի։ Ընտելացիր, եղբա՛յրս, նոր պայմաններին։ Քեզ համար այստեղ չկա ո՛չ

սառցային տափաստան, ո՛չ բուք ու բորան, ո՛չ էլ սառցակարկառ։ Դու, Մի՛շկա, միաժամանակ կլինես մերձմոսկովյան հովեկ...

Դանդաղեցնելով ընթացքը, Բերեժկովը մեքենան տարավ բացատով։ Շուտով երևաց բարձր ցանկապատը. այդտեղից սկսվում էր մանկապարտեզի տերիտորիան։

Կանգնելով դարպասի մոտ, Բերեժկովը ազդանշան տվեց։ Դարպասի փոքրիկ պատուհանը բացվեց և երևաց մի ծերունի, որը ջղայնացած թափահարեց ձեռքը.



Բերեժկովը գրկեց արջուկին...

— Ի՞նչ ես աղմկում, հը՛, ի՞նչ ես աղմկում։ Չես հասկանում, որ մեռյալ ժամ է։

— Ներեցեք, հայրի՛կ, չգիտեի։

— Չգիտեի՞, չգիտեի՞. հարկավոր է իմանալ։ Մեքենաների մուտքն այստեղ արգելվում է։ Ձեզ ով է պետք։

— Ուզում եմ երեխաներին տեսնել։

— Եկեք ծնողների համար նախատեսնված օրը. այդ ժամանակ էլ կարող եք տեսնել։

— Այդ օրը ես չեմ կարող գալ։

— Իսկ ինչո՞ւ չեք կարող։

— Որովհետև... առաջինը՝ ես ծնող չեմ, և երկրորդ՝ վաղը չէ մյուս օրը ինքնաթիռով մեկնելու եմ։

— Իսկ հեռո՞ւ եք գնալու։

— Չէ՞, ձեռքդ մեկնես՝ կհասնի. Հյուսիսային բևեռ... Խնդրեցեք, եթե կարելի է, դիրեկտորին։

Ծերունին գնաց և տաս րոպեից հետո վերադառնալով խստորեն ասաց.

— Մեքենան թողեք այստեղ, իսկ դուք եկեք ինձ հետ։

Ծերունին Բերեժկովին ուղեկցեց դեպի մի փոքրիկ շենք։ Նրանք մտան երեխաների նկարած պատկերներով զարդարված մի լուսավոր սենյակ։

— Հիմա դիրեկտորը կգա, նստեցեք,— ասաց ծերունին և հեռացավ։

Բերեժկովը սկսեց դիտել նկարները. այստեղ ամեն ինչ կար՝ և՛ ձիավորներ արագավազ ձիերի վրա, և՛ հիասքանչ նատյուրմորտներ, և՛ բազմերանգ թիթեռներ... Նկարներից մեկը գրավեց նրա ուշադրությունը։ Կապույտ սառցակտորի վրա ամառային հագուստով կանգնած էր մի մարդ, որը ձեռքին ծածանում էր մի ահագին կարմիր դրոշ։ Նկարի տակ տպագիր տառերով գրված էր հեղինակի անունը և ազգանունը՝ Ժենյա Պոցելույկո։ Բերեժկովը ժպտաց. «Յուրի Պետրովիչի տղան է։ Կխնդրեմ, որ այս ստեղծագործությունն ինձ տա և կտանեմ այնտեղ։ Թող հայրը ուրախանա և իմանա, թե ինչպիսի՜ հայտնի նկարիչ է դառնալու իր տղան»։ Տարվելով նկարներով Բերեժկովը չնկատեց, թե երբ ներս մտավ դիրեկտորը։

— Դուք ինձ մո՞տ եք եկել, ընկե՛ր, հարցրեց նա։

— Այո, թույլ տվեք ներկայանալ՝ Անդրեյ Նիկոլայևիչ Բերեժկով։ Արտակարգ ու լիազոր դեսպան։

— Դեսպա՞ն, ներեցեք՝ ի՞նչ մտքով։

— Ամենաուղղակի. «Հյուսիսային բևեռ» դրեյֆող գիտական կայանի արտակարգ ու լիազոր դեսպան։

— Դուք ճի՞շտ եք ասում,— հանկարծակիի գալով և ուրախությունը հազիվ զսպելով հարցրեց դիրեկտորը։

— Միանգամայն ճիշտ։ Բևեռախույզ հայրերը հանձնարարել են ինձ ստուգելու, թե ինչպես են ապրում իրենց երեխաները ձեզ մոտ։

— Իսկ եթե երեխաների համար մեզ մոտ շատ լավ է։

— Այդ դեպքում բևեռախույզների անունից ձեզ շնորհակալություն կհայտնեմ և կպարգևատրեմ։

— Ինչպե՞ս թե կպարգևատրեք, ինչո՞վ...

— Սպասեցեք՝ հիմա կբերեմ։

Բերեժկովը գնաց։ Հասնելով մեքենային, նա բաց արեց դուռը և այնտեղից դուրս բերեց արջուկին։ Երբ նա արջուկի հետ ներս մտավ առանձնասենյակ, դիրեկտորը պատուհանի առջև կանգնած կարգադրություն էր անում։

— Նի՛նա, երեխաներին չտանեք լճափ, թողեք այստեղ մնան։

— Լավ, Քսե՛նյա Ալեքսեևնա,— լսվեց պատասխանը դրսից։

Բերեժկովը աքլորին թաքցրեց սեղանի տակ։ Երբ գիրեկտորը շուռ գալով նկատեց ներս եկած Բերեժկովին, հարցրեց.

— Իսկ ո՞ւր է ձեր նվերը...— Եվ նույն վայրկյանին էլ ճչաց սարսափից։ Աքլորը դուրս էր եկել սեղանի տակից և գնում էր ուղիղ դեպի նա։

Բերեժկովը գրկեց աքլորին...

— Ինչքա՜ն լավ նվեր է... Ինչպիսի՜ հրաշք։ Երեխաները ցնծության մեջ կլինեն...



Հարցերը հաջորդում էին մեկը մյուսին։

Կես ժամ հետո Բերեժկովն ու Քսենյա Ալեքսեևնան նստած էին երեխաներով շրջապատված։

Ուրախ, արևից սևացած երեխաները հետաքրքրությամբ դիտում էին իրենց անծանոթ հյուրին, որը շատ հետաքրքիր բաներ գիտեր։ Նա պատմում էր, թե ինչպես են հատ, շատ հաստ սառույցի մեջ անցքեր բաց անում, թե ինչպես վրաններ են ամրացնում, ձյունից աղյուսներ պատրաստում, թե ինչպես օվկիանոսի ամենախոր տեղից փորձերի համար ջուր են վերցնում։ Նա յուրաքանչյուրին մանրամասն պատմեց իր հոր մասին։ Հանկարծ Վիտյա Մատվեևը հարցրեց.

— Ճի՞շտ է, քեռի՛, որ բևեռում արևը լուսավորում է օր ու գիշեր։

Ստանալով իրեն հետաքրքրող հարցի պատասխանը, Վիտյան խորը շունչ քաշեց և ասաց.

— Ա՛յ լավ է... ա՛յ թե մենք այնտեղ ապրեինք... մեզ ոչ մի անգամ քնելու չէին տանի։

Նա ուշի ուշով լսում էր, թե ինչպես Լյուբայի հայրիկը որը ամենագլխավորն է բևեռում, Ժենյայի, Նատաշայի և իր հայրիկի հետ միասին ինքնաթիռների վայրէջքի համար հրապարակ են պատրաստել։ Եվ հետո նրա համար շատ հաճելի էր իմանալ, որ իր հայրիկը ոչ պակաս, քան մայրիկը հմտացել էր ճաշ եփելու մեջ։

— Իսկ այնտեղ ծառեր աճո՞ւմ են,— հանկարծ հարցրեց մի ուրիշը։

Բերեժկովը չհասցրեց պատասխանել. Վիտյա Մատվեևը նրանից առաջ ընկավ.

— Ի՞նչ ծառեր, է։ Այնտեղ սառույց է... պետք է հասկանալ։

Հարցերը հաջորդում էին մեկը մյուսին. Բերեժկովը հազիվ էր հասցնում պատասխանել։

Երբ արդեն զրույցը վերջացավ, Բերեժկովը տեղից վեր կացավ և դիմելով երեխաներին ասաց.

— Իսկ հիմա գնանք, ձեզ ծանոթացնեմ բարեկամիս հետ։

Բոլորը միասին ուրախ աղմուկով գնացին դեպի փոքրիկ խաղադաշտը։ Այնտեղ արդեն առանձնացված անկյունում օրորվելով ման էր գալիս աքլորը։ Երբ դաշտում երևաց երեխաների աղմկոտ խումբը, աքլորը նստեց տեղում։ Նա երբեք չէր տեսել, որ իր համար այդպիսի ցնծություն սարքեին։ Երեխաները թռչկոտում էին, ծափ տալիս ու բղավում՝ «Մի՛շկա, Մի՜շենկա»... Նրանցից ինչ որ մեկը աքլորին մի խնձոր գցեց, մի ուրիշը ձեռքը մեկնեց աքլորին՝ շոյելու ցանկությամբ, իսկ փոքրիկ Նատաշան բոլորին լսելի ձայնով հայտարարեց.

— Ես իմ բաժին կաշան կտամ նրան...

Բոլորը նրան նայեցին։ Նրանք շատ լավ գիտեին, որ Նատաշան կաշա չէր սիրում։

Երբ երեխաների զվարճալի ծանոթությունը աքլորի հետ վերջացավ, բոլորը միասին Բերեժկովին ուղեկցեցին մինչև դարբասը։ Մանկական ուրախ խմբերգը երկար ժամանակ ուղեկցում էր հեռացող մեքենան։

Փոխադր. Մ. ԱՄԻՐՅԱՆ

# ՈՒԺԻ ԵՎ ՀԱՄԱՐՁԱԿՈՒԹՅԱՆ ՍՏՈՒԳԱՏԵՍ

Այս տարի հուլիսի տասներկուսին, ռեսպուբլիկական ստադիոնում սկսվեց դպրոցականների իններորդ սպարտակիադան։

Հանդիսավոր էր այդ բացումը։ Ստադիոնում փողփողում էին պետական դրոշները։ Մուտքի վերևում կախված կարմիր պաստառի վրա գրված էր. «Ողջո՜ւյն ռեսպուբլիկական սպարտակիադայի մասնակիցներին»։ Ֆիզկուլտուրայի խրոխտ քայլերգի հնչյունների տակ, գեղեցիկ համազգեստ հագած, ստադիոն են մտնում Հայաստանի մոտ վեց հարյուր պատանի մարզիկ։ Ողջույնի խոսքերից հետո առաջնության համար պայքարում են թեթև ատլետները, մարմնամարզիկները, հեծանվորդները, բասկետբոլիստները, վոլեյբոլիստները, հրաձիգները և լողորդները։

Առաջին խմբում, որտեղ մրցում էին Երևանի, Լենինականի և Կիրովականի սպորտսմենները, լավ արդյունքներ ցույց տվեցին Երևանի թեթև ատլետները, վոլեյբոլիստները, բասկետբոլիստները, մարմնամարզիկները և լողորդները, Լենինականի հրաձիգները ու Կիրովականի հեծանվորդները։ Նրանք թիմային կարգով նվաճեցին առաջին տեղը։ Երկրորդ խմբում Նոյեմբերյանի աղջիկների ու Էջմիածնի տղաների բասկետբոլի թիմերը նույնպես նվաճեցին առաջին տեղը։ Սահմանվեց յոթ նոր ռեսպուբլիկական ռեկորդ։ Տասնմեկ դպրոցականներ մարմնամարզությունից, լողից և հրաձգությունից հանձնեցին համամիութենական առաջին կարգի նորմաները։

Երկու հարյուր մետր տարածության «դելֆին» ոճով լողը երևանցի Վանիկ Փիլոյանն անցավ 2 րոպե 47,8 վայրկյանում և սահմանեց նոր ռեսպուբլիկական ռեկորդ. նա լրացրեց առաջին կարգի նորմա։ Սպորտային բարձր արդյունք ձեռք բերեց նաև երևանցի Լյովա Մարյանը։ Նա երկու հարյուր մետր «բրասս» ոճում ցույց տվեց 2 րոպե 50,0 վայրկյան արդյունք և նույնպես ռեսպուբլիկական նոր ռեկորդ սահմանեց։ Երևանի Չերժինսկու անվան դպրոցի 10-րդ դասարանի աշակերտ, շնորհալի թեթև ատլետ Եվգենի Առաքելյանը չորս հարյուր մետր տարածությունը վազեց 0,51 վայրկյանում և սահմանեց նոր ռեսպուբլիկական ռեկորդ։

Հետաքրքիր էին նաև մարմնամարզության մրցումները։ Յուրաքանչյուրը ցանկանում էր ավելի շատ միավորներ ձեռք բերել։ Երևանցի Ջուլիետա Գալայանը և կիրովականցի Յուրի Պողոսյանը գերազանցեցին բոլորին և նվաճեցին ռեսպուբլիկայի չեմպիոնի պատվավոր կոչումը։

Լենինականի լավագույն պատանի հրաձիգներ՝ Գարուշ Զարյանը և Ալեքսանդր Հակոբյանը տարբեր վարժություններում գրավեցին առաջին տեղը։

Սպարտակիադայում ընդհանուր առաջնությունը նվաճեցին Երևանի դպրոցականները, երկրորդ տեղը՝ Լենինականի սպորտսմենները։



Վանիկ Փիլոյանը ձգտում է հաղթանակի...

Սպարտակիադայում առաջնություն նվաճող թիմերը և անհատները պարգևատրվեցին Հայկական ՍՍՌ Լուսավորության մինիստրության պատվոգրերով, գավաթներով ու նվերներով։

Օգոստոսի 11-ին հաղթողներից կազմված թիմերը մեկնեցին Կիև՝ դպրոցականների համամիութենական երկրորդ սպարտակիադային մասնակցելու համար։

Ս. ԱՀԱՐՈՆՅԱՆ
(Հայկական ՍՍՌ Լուսավորության մինիստրության ֆիզիկական դաստիարակության ավագ տեսուչ)

# ԻՍԱՀԱԿ ԼԵՎԻՏԱՆ

*(Մահվան 55-ամյակի առթիվ)*

Վաղ գարուն է, ձնհալը նոր է սկսվել: Ծառերի ճյուղերի վրա երևում են առաջին բողբոջները. երկհարկանի փայտաշեն տան մոտ անօգնական կանգնած է սահնակը: Հաղթանակող արևի ճառագայթների տակ ձմեռվա այդ բարեկամը այլևս ոչինչ չունի անելու: Սա ռուսական մեծ նկարիչ Իսահակ Լևիտանի «Մարտ» նկարն է: Ինչպիսի՜ գեղեցկություն կա այդ սքանչելի նկարում: Իսկ «Գարուն՝ մեծ ջուր» նկա՞րը: Հալվել է ձյունը: Հունից դուրս եկած գետը ողողել է ափերը: Դալար կեչիները արևին են պարզում իրենց բողբոջները: Ահա և «Աշունը»: Ծառերի սաղարթները հագել են կարմիր, ոսկի ու նարինջ. դեղին են դաշտերը, հանդարտ հոսում է ջուրը գետակում: Թույլ ժպտում է արևը աշնան առաջին ամպերի միջից: Նայում ես նկարին ու ափսոսում, որ շուտով ամեն ինչ կծածկվի ձյան միապաղաղ սպիտակ սավանով:

Բազմաթիվ են Լևիտանի ստեղծած բնանկարները: Պատկերված են հասած արտերի հեքիաթային ոսկին, կապույտ անմոռուկներով ծածկված մարգագետինները, արևով ողողված անսահման հեռուները ձգվող դաշտավայրերը, թավուտ անտառները և մեղմորեն խայտացող լճակները:

Նկարիչը մեծ հպարտությամբ գովերգել է իր հայրենիքի՝ Ռուսաստանի բնությունը: Հարազատ ու սիրելի էր բնությունը, բայց և դժվար ու ծանր էր ժողովրդի կյանքը: Այդ պատճառով էլ Լևիտանի նկարները պարուրված են տխրությամբ:

Տխուր ու չարքաշ է եղել և Լևիտանի կյանքը: Նա եղել է որբ, անօթևան ու կիսաքաղց: Տասնութ տարեկան էր Լևիտանը, երբ նրա «Աշունը Սոկոլնիկիում» նկարը գրավեց լայն հասարակության ուշադրությունը: Նկարում երևում էր մեծ նկարչի տաղանդը. բայց նա ստիպված էր ման գալ հնացած զգեստներով, կիսաքաղց վիճակում: Ողջ Ռուսաստանը ճանաչում ու սիրում էր Լևիտանին, իսկ ցարական ոստիկանները նրան աքսորեցին Մոսկվայից: Ծանր պայմանները ժամանակից շուտ քայքայեցին Լևիտանի առողջությունը: Նա մահացավ երեսունինը տարեկան հասակում՝ 1900 թվականի օգոստոսի չորսին:

Լևիտանի բազմաթիվ բնանկարները կազմում են ռուսական արվեստի հպարտությունը: Այդ նկարները սեր են արթնացնում դեպի բնությունը, ծանոթացնում են անցյալի տխուր կյանքի հետ:

Լևիտանի նկարները զարդարում են մեր երկրի լավագույն թանգարանների ցուցահանդեսները: Նրա մի շարք նկարները ցուցադրված են Հայաստանի Պետական պատկերասրահում:

Ռ. ՊԱՐՍԱՄՅԱՆ

*(Հայաստանի Պետական պատկերասրահի դիրեկտոր)*



ՆԱՎԱԿԸ ԱՓԻ ՄՈՏ — Ի. ԼԵՎԻՏԱՆ

# «ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԱՍԻԱՅԻ ԽՈՐՔԵՐՈՒՄ»

Դուք երբևիցե ճանապարհորդե՞լ եք։ Եթե ճանապարհորդած լինեք, կզգաք, թե ինչքան մեծ հաճույք է բոլորովին անծանոթ վայրերում ճանապարհորդելը…

Ահա մի փոքրիկ գրքույկ, որ բերել է Լորաինը։ Նրա վերջին էջում ինչ-որ բան է նկարված, իսկ կողքին՝ տիբեթերեն գրություն կա.

«Ջայիրի լեռներ, հին հանքարան. այստեղ ոսկի է պահված»։




— Ահա տես,— բացատրում է Լորաինը ճանապարհորդ Ցամա Կոկուշկինին,— Չինական ֆանզա է նկարված։ Նրա մի պատից սլաքն ուղղված է դեպի ոսկուն վերաբերող մակագրությունը, իսկ կտրից երկու սլաք է գնում դեպի լեռնագագաթները։ Այս գծագիր նկարով կարելի է գտնել ֆանզան, որի մեջ պահված է ոսկին։

Եվ այսպես, նախապատրաստվելուց հետո սկսվում է առաջին ճանապարհորդությունը դեպի Ջայիրի լեռները…

Իսկ ի՞նչ բաներ ասես, որ չեն հանդիպում ճանապարհին…

Շատ հետաքրքիր է Իրեն սառը քամու մասին եղած պատմությունը։ Այդ քամուց սարերի ձյունը հալչում է. սարերը լերկ են մնում։ Բայց այդ քամին փչում է նաև բարձր լեռներում՝ Ալա-կուլ և Էբինոր լճերի մոտ։ Ալա-կուլ լճում կա մի կղզի։ Այդտեղ բարձրանում է մի լեռ, իսկ լեռան մեջ՝ քարանձավ կա։ Պատմում են, որ այդ քարանձավից է դուրս թռչում զարհուրելի Իրեն քամին։ Մի անգամ, մի հանդարտ օր, կիրգիզները ամբողջ աուլով հավաքվել են և այդ քարանձավի մուտքը փակել եղան մորթիներով ու քարերով, որպեսզի Իրեն այնտեղից այլևս դուրս չգա։ Բայց, երբ եկավ ժամանակը, Իրեն կատաղեց, քարերը շպրտեց, մորթիները թռցրեց և առաջվա նման սկսեց փչել…

Այս բոլորը հեքիաթ է, իհարկե։ Գիտնականները ոչ մի այդպիսի քարանձավ չեն գտել։ Պարզվել է, որ քամին կղզու կողմից չի փչում, այլ Էբինոր լճի կողմից։ Նա տարածվում է ամբողջ հովտում և Մայլի, Բարլիկ և Ալա-Տաու լեռների միջև։

Խիզախները նշված գծագրով գնում են գանձ որոնելու։ Նրանք շատ դժվարությունների են հանդիպում և ահա գտնում են չինական խրճիթների՝ ֆանզաների մնացորդները, բայց ոսկի չեն գտնում. միայն վեցերորդ խրճիթում կվարցի կտորների մեջ է, որ փայլփլում է ոսկին։

Ահա և փորձանք։ Գիշերը վրա հասնելուն պես երևում են ինչ-որ ճրագներ։ Քիչ-քիչ դրանք մոտենում են։ Պարզվում է, որ գայլեր են։ Ճանապարհորդները խարույկ են վառում և ամբողջ գիշեր դիմադրում են գայլերին։ Ֆանզայում նրանք գտնում են մի կճուճ՝ ոսկով լի… իսկ հետո նորից շարունակում են ճանապարհը։

Ահա Խարա-Խոտո հռչակավոր քաղաքի ավերակները։ Դեռ հեռվից ճանապարհորդներին դիմավորում են հին քաղաքի աշտարակավոր պարիսպները։ Անձրևները, քամիները, սառնամանիքները, շոգը խիստ քայքայել են այդ բոլորը։ Քաղաքի ներսում երևում են փողոցները, որոնց ուղղությամբ ձգվում են կավաշեն տների ավերակները։ Այստեղ ու այնտեղ երևում են դեղնագույն, թրծած աղյուսից կառուցված տաճարների հիմքեր։ Փողոցների ու տների ներսը լցված է ավազով, աղյուսի կտորտանքով և կավե ամանների խեցիներով…

Մյուս օրը ճանապարհորդներն սկսում են պեղումները և շատ հնություններ են հանում ավազների տակից։ Է՛լ չինարեն, տիբեթերեն, տանգուտերեն և պարսկերեն գրքեր ու ձեռագրեր, է՛լ դրամներ, է՛լ մետաղյա փոքրիկ թասեր, աստվածների արձաններ, արծաթե ու պղնձյա ապարանջաններ։ Այդպիսին էր մեռյալ քաղաքը։ Իսկ Դոնխուան քաղա՞քը, Լոբ նոր հեքիաթային լի՞ճը, Տակ-Լա-Մական անապատը, Տիբեթի մայրաքաղաք Լհասան…

Ահա այսպիսին է սովետական խոշոր աշխարհագրագետ և երկրաբան, ակադեմիկոս Օբրուչևի «Կենտրոնական Ասիայի խորքերում» գիրքը։

Դա կհարստացնի ձեր գիտելիքները, կսովորեցնի խիզախություն և տոկունություն. ձեր մեջ սեր կարթնացնի դեպի աշխարհագրությունը, երկրի անցյալը…

Լ. ԱՍՄԱՐՅԱՆ

# ՀԵՏԱՔՐՔԻՐ ԺԱՄԱՆՑ

## ՇԱԽՄԱՏ

*(Բաժինը վարում է միջազգային վարպետ Հ. Դասպարյանը)*

Խնդիր № 1

Վ. Բրոն



Մատ երեք քայլից.

Խնդիր № 2

Ի. Դայկ



Մատ երեք քայլից.

Երեխանե՛ր, ձեզ առաջարկվում է շախմատային երկու խնդիր: Լուծեցեք և պատասխանները ուղարկեցեք խմբագրություն:

Այս դրության մեջ աշխատեցեք գտնել սպիտակների այն կոմբինացիան, որն ապահովում է նրանց ճաղթանակը սևերի ճկատմամբ:

Սպիտակներ, Աh1, Թb6, Նc1, Ձb7, g2 (5)

Սևեր, Աh8, Թc7, Նd8, Ձg3 (4)

Սկսում են սպիտակները:

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկը նկ. Մ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ


*Խմբագիր՝* ՏԱԼՅԱՆ Վ.

*Խմբագրական կոլեգիա՝* ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԽԱՉԱՏՐՅԱՆ Հ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21.

*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, Հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06*

*ՎՅ 12307, Պատվեր 716, Տիրաժ 5000, Տպագրական 3½ մամուլ, Ստորագրված է տպագրության 17/VIII 1955 թ.*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության Դլխավոր վարչության № 1 տպարան, Երևան, Ալավերդյանի փող. № 65.*



# ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ



## ՄԵԾ ՎԻՊԱՍԱՆԸ

Երկար տարիներ ապրելով Բաքվում, Թիֆլիսում և արտասահմանում Շիրվանզադեն իր սեփական աչքերով տեսնում էր, թե ինչպես կապիտալիստները կեղեքում էին հարյուր հազարավոր մարդկանց ու նրանց ընտանիքներին: Եվ նա հայկական թերթերում տպագրված մի ամբողջ շարք հոդվածներում նկարագրեց Բաքվի բանվորների անտանելի կյանքը: Դրա մասին է գրված



նաև նրա առաջին ստեղծագործության՝ «Հրդեհը նավթագործարանում» պատմվածքում:

Շիրվանզադեն իրական գույներով է պատկերել բուրժուական ընտանիքի նեխած կյանքն ու կենցաղը: Նա իր լավագույն գործերում և, ամենից ավելի հայտնի «Քաոս» վեպում ցույց է տվել բուրժուական հասարակության գարշելի դեմքը:

Մեծ գրողը գրական հարուստ ժառանգություն է թողել: Նրա «Նամուս», «Արտիստը», «Չար ոգի», «Քաոս», «Պատվի համար» և այլ ստեղծագործությունները ընթերցողների սիրելի գրքերն են դարձել:

Իր կյանքի վերջին տարիները Շիրվանզադեն անցկացրեց Սովետական Հայաստանում: Մեր գրողը ակտիվ կերպով մասնակցում էր գրական և հասարակական կյանքին:

Մոսկվայում կայացած սովետական գրողների համագումարի ամբիոնից 76 տարեկան գրողը հպարտությամբ հայտարարեց. «Ես չեմ ծերանում, որովհետև ապրում և ստեղծագործում եմ սովետական երկրում»:

Նա մեռավ 1935 թվականին, 77 տարեկան հասակում:

## ՀԵՐՈՍԸ

Հարձակվելու պատրաստ, դեմդիմաց անշարժ կանգնել էին ձիավորների երկու շարք: Կարմիր ջոկատների հրամանատարը, որ մի հաղթանդամ ու քաջ տղամարդ էր, լուռ, աչքերը կկոցելով, բեղի մի ծայրը բերանն առած, մի վայրկյան միայն նայեց դեպի իր կողմն արշավող լեհ սպային: Հետո ձին ասպանդակեց ու սուրը կայծակի պես գլխից վեր շողացնելով, ցասումով խոյացավ դեպի թշնամին:

Մենամարտն սկսվեց: Հանկարծ սպան մեջքի վրա շուռ եկավ ու ցած ընկավ ձիուց: Ուսից վերք էր ստացել նաև կարմիրների հրամանատարը: Իսկ նրա մարտիկները հետապնդում էին թշնամուն:



— Պանե՛ր, զենքը ցած գցեք,— գոչում էին նրանք:

Ահա այդպես, քաղաքացիական կռիվների թեժ օրերին, Ուկրաինայի տափաստաններով ու դաշտերով արշավում էր տասնչորսերորդ հեծյալ դիվիզիան, որի հրամանատարն էր փառաբանված հերոս Ալեքսանդր Յակովլևիչ Պարխոմենկոն:

Չքավոր բրուտի որդի փոքրիկ Սաշան տաս տարեկան հասակում զրկվեց ծնողներից: Նա իր պապի հետ շարունակ ջուր էր կրում հարուստների տները: Այնուհետև եղբոր օգնությամբ ընդունվեց Լուգանսկի մեխանիկական գործարաններից մեկը և երեք տարի հետո արդեն հիանալի փականագործ էր:

1904 թվականին տասնութ տարեկան հասակում նա ընդունվում է բոլշևիկյան պարտիայի շարքերը և այդ ժամանակվանից էլ նվիրվում ռևոլյուցիայի մեծ գործին:

Պարխոմենկոն Լուգանսկում դառնում է Կ. Ե. Վորոշիլովի մարտական ընկերն ու մերձավոր զինակիցը:

1918 թվականին նա Վորոշիլովի գլխավորած հինգերորդ բանակի առասպելական արշավի կազմակերպիչներից մեկն էր: Նա մարտերով անցավ Լուգանսկից մինչև Ցարիցին:

Վերջին կռիվներից մեկում, 1921 թվականի հունվարի երեքին Պարխոմենկոն ընկավ հերոսի մահով:

## ԿՈՄՈՒՆԻՍՏ ԳՐՈՂԸ

Տասնամյակներ առաջ, աշխարհով մեկ պատերազմի դեմ հնչեց ֆրանսիական ժողովրդի զավակ, կոմունիստ գրող Հանրի Բարբյուսի բողոքի ձայնը:

Բարբյուսը համաշխարհային առաջին պատերազմի մասնակից էր: Նա տեսավ պատերազմի սարսափները, և հայտարարեց, որ պատերազմը ձեռնտու է միայն կապիտալիստներին: Ժողովուրդները պատերազմ չեն ցանկանում: Դա մեծ չարիք է մարդկության համար:

Մեծ վարպետությամբ գրված իր «Պայծառություն», «Կրակը» վեպերում և պատմվածքներում ու ակնարկներում նա պատկերել է հասարակ



մարդկանց կյանքը: «Կրակը» վեպը թարգմանվել է շատ լեզուներով:

Հանրի Բարբյուսը մինչև իր կյանքի վերջը մնաց սովետական երկրի անկեղծ բարեկամներից մեկը: Նա այցելեց Սովետական Միություն, տեսավ նրա նվաճումները և գրեց իր հայտնի «Ստալին» գիրքը:

Բարբյուսը մեռավ 1935 թվականին:



ՄԱՆԿԱԿԱՆ ԵՐԿԱԹՈՒՂՈՒՄ

Ֆոտոէտյուդ՝ Ս. ԽՈՍՐՈԵՎԻ